Պրոլետարներ բոլոր յերկրների,
միացե՛ք!

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 14 (21)

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն «Խ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1937

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ

## № 14 (21)



ՀԿ(բ)ԿԿԿ հրատարակչություն—«Սով. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ — 1937

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագիր՝ ԳԻՆՈ ՇԱՂԳԱՄՅԱՆ
Սրբագրիչ՝ Մ. ՍՈՒՐՅԱՆ և Մ. ԴԵՎՈՐԳՅԱՆ
Պատվ. 75 հրատ. № 16
Գլավլիտի լիազոր № Շ—1253 տիրաժ 6784

---

ՀԿ(բ)Կ ԿԿ Հրատարակ. «Խորհրդային Հայաստան»-ի տպարան, Յերևան

# «ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆ» ՆԱԽԱԳԾԻ ՄԱՍԻՆ

## ԸՆԿ. ՅԱ. Ա. ՅԱԿՈՎԼԵՎԻ ԶԵԿՈՒՅՈՒՄԸ ԽՍՀՄ ԿԵՆՏԳՈՐԾԿՈՄԻ 7-ՐԴ ԳՈՒՄԱՐՄԱՆ 4-ՐԴ ՆՍՏԱՇՐՋԱՆՈՒՄ 1937 Թ. ՀՈՒԼԻՍԻ 7-ԻՆ

### I.

### ԻՆՉՊԵՍ Ե ԱՊԱՀՈՎՎՈՒՄ ԸՆԴՀԱՆՈՒՐ, ՀԱՎԱՍԱՐ ՅԵՎ ՈՒՂՂԱԿԻ ԸՆՏՐԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔՆ ՈՒ ԳԱՂՏՆԻ ՔՎԵԱՐԿՈՒԹՅՈՒՆԸ

*ԽՍՀՄ Խորհուրդների Արտակարգ 8-րդ Համագումարը հանձնարարել էր ԽՍՀ Միության Կենտրոնական Գործադիր Կոմիտեյին՝ ԽՍՀՄ-ի նոր Սահմանադրության հիման վրա մշակել և հաստատել ԽՍՀՄ Գե-*

րագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրությունը:

ԽՍՀՄ Կենտրոնական Գործադիր Կոմիտեի Նախագահության կողմից Կենտրոնական Գործադիր Կոմիտեի նստաշրջանի քննարկմանն ու հաստատմանը ներկայացվող «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» նախագիծն ըստ էության մի հրահանգ է ներկայացնում ԽՍՀՄ-ի Սահմանադրության՝ ընտրական սիստեմի վերաբերյալ բաժնի առթիվ: Ընտրական օրենքի նախագծի խնդիրն է յերաշխավորել ԽՍՀՄ-ի Ստալինյան Սահմանադրությամբ սահմանված ընտրական սիստեմի անշեղ կատարումը:

ԽՍՀՄ-ի Սահմանադրությամբ սահմանված է ընդհանուր ընտրական իրավունք:

Դրան համապատասխան ընտրական օրենքն ընտրությունների օրը 18 տարին լրացրած յուրաքանչյուր քաղաքացու համար ապահովում է այն անձանց ցուցակների մեջ մտնելը, վորոնք իրավունք ունեն ընտրելու և ընտրվելու Գերագույն Խորհրդի մեջ (հոդված 8-րդ): Հատկանշական է, վոր դատարանի վճռով ընտրական իրավունքներից զրկված անձինք, ինչպես նաև օրենքով սահմանված կարգով խելագար



ճանաչված անձինք ընտրական ցուցակների մեջ չեն մտցվում (հոդված 9-րդ):

Նստակեցության վոչ մի ցենզ մեր ընտրական օրենքը չի պահանջում ընտրողներից, մինչդեռ կապիտալիստական պետությունների թվում յեղած ամենից դեմոկրատական յերկրները նույնիսկ ընտրություններին մասնակցելու իրավունքից զրկում են վորոշ ժամանակից պակաս տվյալ վայրում ապրող քաղաքացիներին (Մեծ Բրիտանիայում՝ յերեք ամիս, Բելգիայում և Ֆրանսիայում՝ 6 ամիս, Ամերիկայի Միացյալ Նահանգներում՝ յերեք ամսից մինչև 2 տարի — տարբեր կերպով, տարբեր նահանգներում):

Իր բնակության վայրը փոխող քաղաքացուն հնարավորություն է տրվում մասնակցելու ընտրություններին «քվեարկության իրավունքի վկայականով», վոր նրան տալիս է աշխատավորների պատգամավորների Խորհուրդը՝ ըստ նրա նախկին բնակության վայրի (հոդվածներ 15-րդ և 79-րդ):

Ինքնըստինքյան հասկանալի յե, վոր սոցիալիստական յերկրի ընտրական օրենքի նախագիծը բացառում է գույքային ցենզի ամեն մի պահանջ, ինչպես այդ գույ-

թյուն ունի, որինակ, Ամերիկայի Միացյալ Նահանգների մի շարք նահանգներում: ԱՄՆ-ի առանձին նահանգներում ընտրողներից պահանջվում է ունենալ վորոշ նստակեցություն:

Մի շարք, նույնիսկ ամենից ավելի դեմոկրատական բուրժուական պետությունների ընտրական որենքներն ընտրություններին մասնակցելու և ընտրված լինելու հնարավորությունից զրկում են բանակում գտնվող ակտիվ զինծառայողներին (Ֆրանսիա, Չեխոսլովակիա): Ի տարբերություն այդպիսի կարգերի, մեր նախագիծը ՍՍՀՄ-ի Սահմանադրության համաձայն Կարմիր բանակում գտնվող անձանց համար իրական հնարավորություն է ապահովում մասնակցելու ընտրություններին և ընտրվելու (հոդված 12-րդ): Հարկ չկա ապացուցանելու այդ տարբերությունը. բուրժուական բանակների համար քաղաքական լուսավորությունը հավասարազոր է զինվորական կարգապահության քայքայման, իսկ մեր Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակի քաղաքական լուսավորությունն ամրապնդում, բարձրացնում է զինվորական կարգապահությունը:

Կինը մի շարք բուրժուա-դեմոկրատա-



կան երկրներում — նույնիսկ այնպիսի երկրներում, ինչպիսիքն են Շվեյցարիան, Ֆրանսիան, Բելգիան — զրկված է ընտրական իրավունքներից: Իսկ մեզ մոտ կանայք ընտրելու և ընտրվելու իրավունքից ոգտվում են տղամարդկանց հետ հավասար:

Վերջապես մեր «ՍՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» ընդհանուր ընտրական իրավունք է ապահովում այն բանով, վոր բացառում է վորևէ մեկին ազգային հատկանիշով ընտրություններից հեռու պահելու վորևէ կերպ արտահայտված հնարավորությունը: Այս տեսակետից ևս ընտրական որենքի նախագիծը չի սահմանափակվում հենց միայն իրավունքները հռչակելով, այլև ցույց է տալիս այն բոլոր սողանցքները, վորոնցով կարող է տեղի ունենալ վոչ ռուս ազգության ընտրական իրավունքների սահմանափակում և այդ սողանցքները փակում է: Ահա թե ինչու մասնավորապես մեր ընտրական որենքի նախագիծը նախատեսում է, վոր ընտրական բյուլետենները տպագրվում են համապատասխան ընտրական օկրուգի բնակչության լեզվով (հոդված 68-րդ): Այս տեսակետից ևս մեր նա–

խագիծը տարբերվում է, ասենք, Ամերիկայի Միացյալ Նահանգների օրենսդրական պրակտիկայից, որտեղ մեծ թվով նեգր բնակչություն ունեցող հարավային նահանգներում ընտրողների համար սահմանել են անգլերեն լեզվից գրագետ լինելու պահանջը և այդ հիման վրա առնվազն յերկու միլիոն նեգրերի զրկել են ընտրական իրավունքից:

Վերջապես ընտրական օրենքի նախագիծը մի շարք յերաշխիքներ է նախատեսում ընտրողների համար:

Ընտրողների ցուցակը պետք է հայտարարվի ընտրություններից 30 օր առաջ, ընդհանուրի գիտության և ստուգման համար (հոդված 13-րդ):

Աշխատավորների պատգամավորների Խորհրդի Գործադիր Կոմիտեն պարտավոր է ոչ ավելի քան յերեք օրվա ընթացքում լուծել ընտրողների ցուցակի մեջ յեղած անճշտությունների վերաբերյալ քաղաքացիների ամեն մի բողոք (հոդվածներ 16-րդ, 17-րդ և 18-րդ):

Ընտրողների ցուցակի մեջ անճշտություններ լինելու վերաբերյալ բողոքների առթիվ նախագիծը վերջին խոսքը վերապահում է ժողովրդական դատարանին, որը



պարտավոր է 3 օրվա ընթացքում դատական դռնբաց նիստում, բողոքողի և Խորհրդի ներկայացուցչի ներկայությամբ, քննության առնել քաղաքացու բողոքը, ժողովրդական դատարանի վճիռը պարտադիր է համապատասխան Խորհրդի համար (հոդվածներ 18-րդ և 19-րդ):

Այսպես է դրությունն ընդհանուր ընտրական իրավունքի սկզբունքն ապահովելու ասպարեզում: Այնպիսի իսկական ընդհանուր ընտրական իրավունք, որ ապահովում է մեր ընտրական օրենքն Ստալինյան Սահմանադրության համապատասխան, չգիտե բուրժուա-դեմոկրատական ոչ մի պետություն (ծափահարություններ):

Անցնում եմ այն հարցին, թե ինչպես է ապահովվում ՍՍՀՄ Սահմանադրությամբ սահմանված հավասար ընտրական իրավունքը:

Ընտրական օրենքի նախագիծը Միութենական Խորհրդի և Ազգությունների Խորհրդի ընտրությունների ժամանակ ապահովում է բանվորի և գյուղացու ձայնի հավասարություն: Միութենական Խորհրդի ընտրությունների ընտրական օկրուգը կազմվում է հետևյալ սկզբունքով—

300 հազար բնակչություն՝ մեկ օկրուգին, միևնույնը՝ քաղաքի և գյուղի համար, միևնույնը՝ բանվորների և գյուղացիների համար: Միութենական Խորհրդի ընտրությունների յուրաքանչյուր ընտրական օկրուգ ուղարկում է մեկ պատգամավոր (հոդված 21-րդ):

Ընտրական օկրուգի այսպիսի կազմակերպումը բացառում է ընտրական օկրուգների անհավասարությունը, որ կա, օրինակ, Ֆրանսիայում, որտեղ Փարիզի 6-րդ բուրժուական օկրուգի առաջին շրջանը 8 հազար ընտրողների կողմից ուղարկում է մեկ պատգամավոր, իսկ Փարիզի պրոլետարական արվարձանում գտնվող Կորբեյի օկրուգի 2-րդ շրջանը 50 հազար ընտրողի կողմից նույնպես ուղարկում է մեկ պատգամավոր:

Այսպես է ապահովվում ՍՍՀՄ-ի բոլոր քաղաքացիների հավասարությունը Միութենական Խորհրդի ընտրությունների ժամանակ, որտեղ— ինչպես մատնանշել է ընկեր Ստալինը — ներկայացված են բոլոր աշխատավորների ընդհանուր շահերը, անկախ նրանց ազգությունից: Ընտրական օրենքն ապահովում է բոլոր Միութենական հանրապետությունների հավասարությունը,



բոլոր ավտոնոմ հանրապետությունների հավասարությունը, բոլոր ավտոնոմ մարզերի հավասարությունը, բոլոր ազգային օկրուգների հավասարությունը՝ Ազգությունների Խորհրդի ընտրությունների ժամանակ, որի խնդիրն է— ինչպես մատնանշել է ընկեր Ստալինը ՍՍՀՄ-ի Սահմանադրության մասին արած իր զեկուցման մեջ— արտացոլել ՍՍՀ Միության ազգությունների ազգային առանձնահատկությունների հետ կապված հատուկ սպեցիֆիկ շահերը:

Ազգությունների Խորհրդի ընտրությունների ընտրական օկրուգը կազմվում է հետևյալ սկզբունքով— 25 օկրուգ՝ ըստ յուրաքանչյուր Միութենական հանրապետության, 11 օկրուգ՝ ըստ յուրաքանչյուր ավտոնոմ հանրապետության, 5 օկրուգ՝ ըստ յուրաքանչյուր ավտոնոմ մարզի և մեկ ընտրական օկրուգ՝ յուրաքանչյուր ազգային օկրուգում:

Ազգությունների խորհրդի ընտրությունների յուրաքանչյուր ընտրական օկրուգ նույնպես ուղարկում է մեկ պատգամավոր (հոդված 22-րդ):

Վերջապես հավասար ընտրական իրավունքն ապահովելու նպատակով «ՍՍՀՄ

Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» նախագիծն արգելում է ընտրողներից որևէ մեկի անունը մեկից ավելի ընտրական ցուցակի մեջ մտցնելը (հոդված 11-րդ):

Սահմանադրությունը սահմանել է ուղղակի ընտրական իրավունք:

Դրան համապատասխան ընտրական օրենքը նախատեսում է, որ ինչպես Միութենական Խորհրդի, այնպես և Ազգությունների Խորհրդի բոլոր պատգամավորները պետք է ընտրվեն ուղղակի ընտրությունների միջոցով: Յուրաքանչյուր ընտրող անմիջականորեն իր քվեն տալիս է այս կամ այն թեկնածուին՝ ինչպես Միութենական Խորհրդի, այնպես և Ազգությունների Խորհրդի մեջ ընտրվելու համար (հոդված 80-րդ):

Այս տեսակետից ևս մեր «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրությունը» տարբերվում է բուրժուա-դեմոկրատական յերկրների ընտրական կարգերից, վորոնք սովորաբար պալատներից մեկը կազմակերպում են վոչ դեմոկրատական ճանապարհով, կամ ուղղակի ընտրական իրավունքի սկզբունքից հրաժարվելով (ինչպես օրինակ՝ Ֆրանսիայի



սենատի ընտրությունները), կամ թե յերկրորդ պալատը կազմելով վոչ թե ընտրության միջոցով, այլ նշանակման միջոցով, ինչպես այդ գոյություն ունի Անգլիայում լորդերի պալատի վերաբերմամբ:

ԽՍՀՄ-ի Սահմանադրությունը, վերջապես, սահմանում է գաղտնի քվեարկություն:

Դրան համապատասխան ընտրական օրենքը սահմանում է քվեարկության այնպիսի սիստեմ, վորն ապահովում է քվեարկության գաղտնությունը. ընտրողները քվեները տալիս են ծրարի մեջ փակված՝ ընտրական բյուլետենները քվեատուփի մեջ գցելու միջոցով (հոդված 76-րդ):

Բյուլետենները լրացնելու համար հատկացվում է հատուկ սենյակ, վորտեղ քվեարկության ժամանակ արգելվում է վորևե մեկի, այդ թվում նաև ընտրական հանձնաժողովի անդամների, ներկայությունը, բացի քվեարկողից (հոդված 77-րդ):

Այն դեպքում, յերբ բյուլետենները լրացնելու համար հատկացված սենյակը միաժամանակ ներս են թողնվում մի քանի ընտրողներ, սենյակը պետք է ունենա միջնորմներ կամ շիրմաներ՝ ներս թողնը-

վող ընտրողների թվին համապատասխան (հոդված 77-րդ).

ընտրողն անձամբ բյուլետեն պարունակող ծրարը գցում է քվեատուփի մեջ (հոդված 80-րդ).

առանց ծրարի կամ վոչ սահմանված տիպի ծրարով տրված բյուլետենները ճանաչվում են անորինական (հոդվ. 90-րդ):

Այսպես է դրությունը գաղտնի քվեարկությամբ կատարվող ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքն ընտրական որենքի մեջ ապահովելու ասպարիզում: Ստալինյան Սահմանադրության տեքստին և վորին համապատասխան «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» նախագիծը չի սահմանափակվում քաղաքացիների ձևական իրավունքների ֆիքսացիայով, այլ իր յուրաքանչյուր հոդվածով հոգատարություն է յերևան բերում քաղաքացիների այդ իրավունքները գործնականում իրականացնելու վերաբերմամբ, քաղաքացիների, վորոնք ընդհանուր քվեար-



կությամբ ստեղծում են ԽՍՀՄ-ի պետական իշխանության բարձրագույն որգանը— ԽՍՀՄ Գերագույն Խորհուրդը (ծափահարություններ):

## II.

## ԻՆՉՊԵՍ Է ԱՊԱՀՈՎՎՈՒՄ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՅԵՎ ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ՝ ԻՐԵՆՑ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐՆ ԱՌԱՋԱԴՐԵԼՈՒ ԻՐԱՎՈՒՆՔԸ

Անցնում եմ այն հարցին, թե ինչպես ընտրական որենքի նախագիծն ապահովում է աշխատավորների հասարակական կազմակերպությունների և ընկերությունների՝ իրենց թեկնածուներն առաջադրելու իրավունքը: Յես կբերեմ ընտրական որենքի 56-րդ հոդվածը, վորը հիմնված է ԽՍՀ Միության Սահմանադրության 141-րդ հոդվածի վրա: «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի թեկնածուներ առաջադրելու իրավունքը ԽՍՀՄ-ի Սահմանադրության 141-րդ հոդվածի հիման վրա ապահովվում է աշխատավորների հասարակական կազմակերպու-

թյունների և ընկերությունների՝ կոմունիստական կուսակցական կազմակերպությունների, պրոֆեսիոնալ միությունների, կոոպերատիվների, երիտասարդության կազմակերպությունների, կուլտուրական ընկերությունների և այլ կազմակերպությունների համար, վորոնք գրանցված են որենքի սահմանած կարգով»:

Ապա բերում եմ 57-րդ հոդվածը՝

«Թեկնածու առաջադրելու իրավունքն իրականացնում են աշխատավորների հասարակական կազմակերպությունների և ընկերությունների թե՛ կենտրոնական որգանները և թե՛ նրանց հանրապետական, յերկրային, մարզային ու շրջանային որգանները, ինչպես և բանվորների ու ծառայողների ընդհանուր ժողովները ձեռնարկություններում, կարմիր բանակայինների ընդհանուր ժողովները զորամասերում, ինչպես և գյուղացիների ընդհանուր ժողովները կոլտնտեսություններում, խորհտնտեսությունների բանվորների ու ծառայողների ընդհանուր ժողովները խորհտնտեսություններում»:

Այս հոդվածները հսկայական նշանակություն ունեն, — դրանք մտցված են ընկեր Ստալինի առաջարկով, — դրանց նպատակն է զարգացնել, ընդարձակել, ապահովել



խորհրդային դեմոկրատիան: Այդ հոդվածները պատգամավորների թեկնածուներ առաջադրելու իրավունք տալով բանվորների ու ծառայողների ընդհանուր ժողովներին՝ ձեռնարկություններում, կարմիր բանակայիններին զորամասերում, ինչպես և գյուղացիների ընդհանուր ժողովներին՝ կոլտնտեսություններում, խորհտնտեսությունների բանվորներին ու ծառայողներին՝ խորհտնտեսություններում, ապահովում են խսկական սոցիալիստական դեմոկրատիզմը ԽՍՀ Միության Գերագույն Խորհրդի ընտրություններում:

Թեկնածուներ գրանցելու այն կարգը, վորն առաջարկում է ընտրական իրավունքի նախագիծը, նպատակ ունի հեշտացնել և պարզացնել աշխատավորների հասարակական կազմակերպությունների ու ընկերությունների համար ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի պատգամավորների իրենց թեկնածուներն առաջադրելը:

Օկրուգային ընտրական հանձնաժողովների վրա պարտականություն է դրվում գրանցելու ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի պատգամավորի՝ առանց բացառության բոլոր թեկնածուներին, վորոնք առաջադրվել են աշխատավորների հասարակական կազմա-

կերպությունների և ընկերությունների կողմից, պահպանելով ԽՍՀՄ Սահմանադրության և «ԽՍՀ Միության Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» (հոդված 60-րդ) պահանջները: Օկրուգային ընտրական հանձնաժողովի հրաժարումը ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի պատգամավորի թեկնածուի գրանցելուց, կարելի յե բողոքարկել յերկու օրում՝ վերադաս ընտրական հանձնաժողովում (հոդ. 63—64-րդ):

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի պատգամավորի բոլոր գրանցված թեկնածուները պարտադիր կարգով պետք է մտցվեն ընտրական բյուլետենի մեջ (հոդված 66-րդ): Ընտրական բյուլետենները՝ ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի պատգամավորի բոլոր թեկնածուների ցուցակով՝ օկրուգային ընտրական հանձնաժողովները պարտավոր են ուղարկել բոլոր շրջանային ընտրական հանձնաժողովներին վոչ ուշ քան ընտրություններից 15 որ առաջ (հոդված 67-րդ):

Իրենց թեկնածուներն առաջադրելու համար աշխատավորների հասարակական կազմակերպություններից և ընկերություններից պահանջվում է միայն ներկայացնել այն ժողովի կամ նիստի արձանագրությունը, վո-



րը թեկնածու յե առաջադրել 61-րդ հոդվածով սահմանված ձևով:

Պատգամավորի թեկնածուներին վոչ մի հատուկ պահանջ չի ներկայացվում, բացի թեկնածու առաջադրող ժողովի կամ նիստի արձանագրության մեջ մատնանշելուց թեկնածուի ազգանունը, անունն ու հայրանունը, տարիքը, բնակավայրը, կուսակցականությունը, ինչպես և պատգամավորի թեկնածուի անձնական համաձայնությունը՝ քվեարկվելու տվյալ ընտրական օկրուգում իրեն առաջադրած կազմակերպության կողմից (հոդված 61-րդ):

Բուրժուական յերկրների ճնշող մեծամասնության մեջ, նույնիսկ դեմոկրատական սկզբունքները թմբկահարող յերկրներում, քաղաքացիները բաժանվում են ակտիվ և պասիվ քաղաքացիների, ակտիվ և պասիվ ընտրական իրավունքն իրար չի զուգադիպում: Նույնիսկ Ամերիկայի Միացյալ Նահանգներում ստորին պալատի անդամ չեն կարող ընտրվել 25 տարեկանից ցածր անձինք, իսկ վերին պալատի անդամ՝ 30 տարեկանից ցածր անձինք: Ֆրանսիայում ստորին պալատի անդամ չեն կարող ընտրվել 25 տարեկանից ցածր, իսկ վերին պալատի անդամ՝ 40 տարեկանից ցածր անձինք: Չե-

Չեխոսլովակիայում ստորին պալատի անդամ չեն կարող ընտրվել 30 տարեկանից ցածր, իսկ վերին պալատի անդամ՝ 45 տարեկանից ցածր անձինք: Նորվեգիայում թե՛ ստորին և թե՛ վերին պալատի անդամ չեն կարող ընտրվել 30 տարեկանից ցածր անձինք: Ի տարբերություն այդ բոլորի, մեր ընտրական օրինագիծը տարիքի վոչ մի սահմանափակում չգիտե պատգամավորի թեկնածուների համար: Այն անձանց, վորոնք դեռ 40 տարեկանից անցնելու անախորժություն չունեն, մեր ընտրական օրենքը հնարավորություն է տալիս Գերագույն Խորհրդի անդամ ընտրվելու, յեթե նրանք արժանացել են դրան իրենց անձնական ընդունակություններով և հասարակության համար կատարված օգտակար աշխատանքով: Այդ փաստում իր արտացոլումն է գտնում խորհրդային յերկրում յերիտասարդությանը ցույց տրվող տարբեր վերաբերմունքը, քան բուրժուական յերկրներում: Խորհրդային յերկիրն իր յերիտասարդությանը հավասար իրավունքներ է տալիս վոչ միայն արտադրության մեջ, այլև պետության կառավարման մեջ, վոչ միայն ընտրելու, այլև ընտրվելու ասպարեզում:

Մեր ընտրական օրենքի նախագիծը պատ-



գամավորի թեկնածուի համար չի պահանջում նստակեցության ավելացրած ցենզ, առավել ևս բացառում է դեմոկրատական սկզբունքների այնպիսի սահմանափակումներ, վորոնք գործադրվում են, օրինակ, Անգլիայում, վորտեղ պահանջվում է 150 ֆունտ ստերլինգ գրավական մուծել յուրաքանչյուր առաջադրված թեկնածուի համար, կամ Ֆրանսիայում ու Չեխոսլովակիայում, վորտեղ թեկնածուի վրա յեն դրվում, օրինակ, ընտրական բյուլետենների արժեքը վճարելու ծախսերը:

Մեր «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» նախագիծը, ի տարբերություն այդպիսի բուրժուական դեմոկրատական յերկրների, նախատեսում է բոլոր ծախսերի, ներառյալ նաև ընտրական բյուլետենների տպագրության ծախսերի վճարումն ի հաշիվ պետության:

Վոչ գույքային վիճակը, վոչ ազգային ծագումը, վոչ սեռը, վոչ պաշտոնական դիրքը, վոչ տարիքը, այլ յուրաքանչյուր քաղաքացու անձնական ընդունակություններն ու անձնական աշխատանքն են վորոշում այս կամ այն քաղաքացուն ԽՍՀ Միության Գերագույն Խորհրդի, ինչպես և աշխատավորների պատգամավորների ամեն մի

Խորհրդի անդամ ընտրվելու հնարավորությունը (ծափահարություններ)։

Աշխատավորների յուրաքանչյուր հասարակական կազմակերպությունը և ընկերությունը, որն առաջադրել է օկրուգային ընտրական հանձնաժողովում գրանցված թեկնածու, ինչպես և ԽՍՀՄ-ի յուրաքանչյուր քաղաքացուն, «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» նախագիծն իրավունք ու փաստական հնարավորություն է տալիս ագիտացիա մղելու իր թեկնածուի համար ժողովներում, մամուլում և ԽՍՀՄ-ի Սահմանադրության 125-րդ հոդվածում մատնանշված այլ յեղանակներով. հոդվածն ասում է՝

«Աշխատավորների շահերին համապատասխան և սոցիալիստական կարգերն ամրապնդելու նպատակով, ԽՍՀ Միության քաղաքացիների համար օրենքով ապահովվում է.

ա) Խոսքի ազատություն,

բ) մամուլի ազատություն,

գ) ժողովների և միտինգների ազատություն,

դ) փողոցային յերթերի ու ցույցերի ազատություն։

Քաղաքացիների այդ իրավունքներն ապահովվում են՝ աշխատավորներին և նրանց



կազմակերպություններին տրամադրելով տպարաններ, թղթի պաշարներ, հասարակական շենքեր, փողոցներ, կապի միջոցներ և աշխատավորների այդ իրավունքն իրականացնելու համար անհրաժեշտ այլ նյութական պայմաններ»։

Այսպես է դրված ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի պատգամավորի թեկնածուներ առաջադրելու կարգի հարցի վերաբերյալ։

Ամբողջ վերոհիշյալից յերևում է, որ ընտրական օրենքի նախագիծը հաջողությամբ է լուծում աշխատավորների հասարակական կազմակերպությունների և ընկերությունների համար՝ թեկնածուներ առաջադրելու իրավունք ապահովելու խնդիրը։

Իսկ գերմանական ֆաշիստական օֆիցիոզ «Ֆյոլկիշեր Բեոբախտերն» իր հուլիսի 3-ի համարում գործը պատկերում է այնպես, թե մեր ընտրական օրենքն իբրև թե թեկնածություններ առաջադրելու իրավունք է տալիս միմիայն կոմունիստական կուսակցությանը և նրան յենթակա կազմակերպություններին, ընդ որում գերմանական ֆաշիստական կուսակցության օֆիցիոզը հենվում է նույնիսկ ընտրական օրինագծի 56-րդ հոդվածի վրա;

Այստեղ մենք ստախոսներին բռնում ենք տեղն ու տեղը:

Համեմատեցեք այդ պնդումն՝ ընտրական օրենքի նախագծի արդեն իմ բերած 56-րդ և 57-րդ հոդվածների հետ, վորոնք թեկնածուներ առաջադրելու իրավունք են տալիս վոչ միայն կոմունիստական կուսակցական կազմակերպություններին, այլև պրոֆեսիոնալ միություններին, կոոպերատիվներին, յերիտասարդության կազմակերպություններին, կուլտուրական ընկերություններին, և այլ կազմակերպությունների, վորոնք արձանագրված են օրենքի սահմանած կարգով, վոչ միայն աշխատավորների այդ հասարակական կազմակերպությունների ու ընկերությունների կենտրոնական օրգաններին, այլև բանվորների ու ծառայողների ընդհանուր ժողովներին՝ ձեռնարկություններում, կարմիր բանակայինների ընդհանուր ժողովներին՝ զորամասերում, ինչպես և գյուղացիների ընդհանուր ժողովներին՝ կոլտնտեսություններում, խորհտնտեսությունների բանվորների ու ծառայողների ժողովներին՝ խորհտնտեսություններում:

Բայց ինչո՞ւ պարոն ֆաշիստներն իրենց օֆիցիոզում հայտարարում են, թե 56-րդ



հոդվածն իբրև թե, բացի կոմունիստական կուսակցությունից և նրան յենթակա կազմակերպություններից, վորևե այլ մեկի արգելում է իր թեկնածուներն առաջադրել: Սրանից պարզ յերևում է մի բան՝ նրանք վախենում են մեր ընտրական օրենքի մասին ճշմարտություն հաղորդել նույնիսկ իրենց ֆաշիստական կուսակցության անդամներին (ծափահարություններ), նրանք վախենում են ճշմարտությունից, նրանք վախենում են, թե չլինի՞ հանկարծ բանվորներն ու գյուղացիները և նույնիսկ իրենց ֆաշիստական կուսակցության մի քանի անդամներն իրազեկ լինեն, վոր մեր յերկրի իշխանության գերագույն օրգանի ընտրություններին ամեն մի ձեռնարկություն, ամեն մի կոլտնտեսություն և խորհտնտեսություն, ամեն մի զորամաս կարող է առաջադրել իր թեկնածուները, պայքարել և ագիտացիա մղել իր թեկնածուների համար: Նրանք վախենում են սոցիալիստական յերկրի ընտրական օրենքն իրենց ընտրական կարգերի հետ համեմատելուց, կարգեր, վորոնց համաձայն ամբողջ յերկրում ընտրությունների ժամանակ բոլոր թեկնածուներին առաջադրում է միմիայն Հիտլերը՝ ամբողջ ժողովրդի համար, կամ իտալական ֆաշիստական կարգերի հետ

համեմատելուց, վորոնց համաձայն թեկնածուների 400 մարդուց բաղկացած ամբողջ ցուցակն առաջադրում է «ֆաշիստական խորհուրդը», այսինքն դարձյալ Մուսոլինին: Այդ առթիվ, սակայն, վնասակար չի լինի վերհիշել ռուսական հին առածը՝ «Ճշմարտությունը, ինչպես մախաթը, չես կարող թաքցնել պարկում» (յերկարատև ծափահարություններ): Ասենք, թող պարոն ֆաշիստները, վորոնք իրենց անվանում են նացիոնալ սոցիալիստներ, իսկ իրականում միջնադարի, խավարապաշտության և ճիզվիտական որդենի յերգիչներ են, փորձեն գործադրել մեր ընտրական սիստեմը: Թող փորձեն ընտրություններին թեկնածուներ առաջադրելու իրավունք տալ նույնիսկ իրենց ֆաշիստական պրոֆեսիոնալ միություններին: Թող թույլ տան իրենց թեկնածուներն առաջադրել կալվածատիրական հողերի բանվորների, բատրակների կոլեկտիվներին, իրենց հիմնարկների շարքային ծառայողների կոլեկտիվներին: Ի՞նչ կմնա ֆաշիզմից: Հետքն անգամ չի մնա (յերկարատև ծափահարություններ):

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի համար թեկնածուներ առաջադրելու որինակով կր–



կին ու կրկին անգամ ամբողջ ուժով ցուցադրվում է այն փաստը, վոր խորհրդային դեմոկրատիան հանդիսանում է անչափ ավելի բարձր և ավելի լայն, ավելի առաջավոր դեմոկրատիա, քան բուրժուական դեմոկրատիան, վոր խորհրդային դեմոկրատիան, ի տարբերություն բուրժուականի, վոչ միայն չի վախենում ժողովրդից, վոչ միայն չի բաժանում իրեն ժողովրդից, այլ և դիմում է աշխատավորության մասսաներին, առաջարկում է աշխատավորներին առաջադրել իրենց թեկնածուները գործարաններում, ֆաբրիկներում, կոլտնտեսություններում, խորհտնտեսություններում: Այստեղ բանն այն է, վոր բոլշևիկները, ինչպես մատնանշել է ընկեր Ստալինը, «ուժեղ են նրանով, վոր կապ են պահպանում իրենց մոր՝ մասսաների հետ, վորոնք ծնունդ են տվել, կերակրել ու դաստիարակել են նրանց: Յեվ քանի դեռ նրանք կապ են պահպանում իրենց մոր՝ ժողովրդի հետ՝ նրանք բոլոր շանսերն ունեն անպարտելի մնալու» (յերկարատև ծափահարություններ):

III.

## ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ

Ընտրությունների և ձայները հաշվելու կազմակերպումն իսկ «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» նախագծում մշակված է այնպես, վոր ապահովվի դեմոկրատիայի իրականացումը գործնականում և ԽՍՀՄ-ի քաղաքացիները պաշտպանված լինեն քվեարկության արդյունքները խեղաթյուրելու բոլոր փորձերից:

Մեր նախագիծը նախատեսում է ընտրական ոկրուգների ցուցակների հրապարակումն ընտրությունների օրը նշանակելու հետ միաժամանակ (հոդված 23-24-րդ), վորը հնարավորություն կտա ընտրական ոկրուգները կառուցել համապատասխան այն բանին, թե ինչպիսի պատկեր կներկայացնի յերկրի ազգաբնակությունն ընտրությունների ժամանակ:

«ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» նախագիծն ընտրական շրջաններ կազմակերպելու հարցում ղեկավարվում է այն խնդրով, վոր հեշտացնի ԽՍՀ Միության յուրաքանչյուր



քաղաքացու՝ գործադրելու իր ընտրական իրավունքները: Այն քաղաքները, արդյունաբերական կետերը, խոշոր գյուղերը և գյուղխորհուրդների տերիտորիաները, վորոնք ունեն 2000-ից ավելի բնակիչ, բաժանվում են ընտրական շրջանների, հաշված մի ընտրական շրջան 1500—2000 բնակչի համար:

Այն գյուղխորհրդի տերիտորիան, վորըն ունի 2000-ից վոչ ավելի բնակիչ, վորպես կանոն, պետք է կազմի մի ընտրական շրջան:

Սակայն յուրաքանչյուր ստանիցայում, գյուղում, ղշլաղում, աուլում, վորն ունի 500-ից ավելի, բայց 2000-ից վոչ ավելի բնակիչ, կազմակերպում է առանձին ընտրական շրջան:

Հեռավոր Հյուսիսային և Արևելյան շրջանների համար, վորտեղ գերակշռում են մանր ավանները, ընտրական որենքի նախագիծն առաջարկում է թույլ տալ ընտրական շրջաններ կազմակերպելու առնվազն 100 բնակիչ լինելու դեպքում: Այդ արված է Հյուսիսային շրջանների աշխատավորների խնդրով, վորոնք հայտարարեցին, թե հակառակ դեպքում Հյուսիսային շրջաններում ապրող քաղաքացիներն

ստիպված կլինեն իրենց ընտրական իրավունքն իրականացնելու համար տասնյակ կիլոմետր ճանապարհ կտրել, վորը վոչ միշտ հնարավոր ե:

Այն նավերի համար, վորոնք ընտրությունների որը նավարկում են, հիվանդանոցների, սանատորիաների, ծննդատների, հաշմանդամների տների համար նախագիծը հնարավոր ե համարում ընտրական շրջաններ կազմակերպել առնվազն 50 ընտրող լինելու դեպքում: Զորամասերի և զինվորական միավորումների համար նախագիծը նախատեսում ե կազմակերպել ընտրական շրջաններ՝ 50-ից վոչ պակաս և 1500-ից վոչ ավելի ընտրողներով: Այդպիսով հնարավորություն կտրվի մասնակցելու ընտրություններին ԽՍՀՄ-ի սահմանները պահպանող ամենահեռու զորամասերին: Այն անձինք, վորոնք գտնվում են բանակում, բայց չեն մտնում զորամասերի և զինվորական միավորումների մեջ, ինչպես որինակ՝ Պաշտպանության ժողկոմատի աշխատողները, այդ նախագծի համաձայն՝ քվեարկությանը մասնակցելու յեն ԽՍՀՄ-ի մյուս քաղաքացիների հետ հավասարապես, ըստ իրենց բնակատեղի:



Ընտրությունները տեղի յեն ունենալու վոչ աշխատանքային որերից մեկում, առավոտյան ժամը 6-ից մինչև գիշերվա ժամը 12-ը: Ըստ յերևույթին կարիք կլինի ընտրել կիրակի որերից մեկը, վորպես վոչ աշխատանքային որ՝ գյուղում: Ընդ վորում ցանկալի յե ընտրել այն կիրակին, վորին զուգադիպի քաղաքի հանգստի որը:

Ձայները հաշվելու համար, պատգամավորի թեկնածուներին գրանցելու, ընտրողներին ընտրական բյուլետեններ մատակարարելու համար և ընտրությունների ընթացքում ընտրական որենքի անշեղ կատարումն ապահովելու նպատակով, առաջարկվում ե ստեղծել կենտրոնական, միութենական և ավտոնոմ հանրապետությունների, ավտոնոմ մարզերի և ազգային ոկրուգների ընտրական հանձնաժողովներ՝ Ազգությունների Խորհրդի ընտրությունների համար, ոկրուգային հանձնաժողովներ՝ Միության Խորհրդի ընտրությունների ու Ազգությունների Խորհրդի ընտրությունների համար և շրջանային ընտրական հանձնաժողովներ:

Ընտրությունները կատարելու վրա և մանավանդ ձայները հաշվելու վրա խական ժողովրդական վերահսկողություն ա-

պահովելու և չարաշահումների ամեն մի հնարավորություն բացառելու նպատակով, նախագիծն առաջարկում է բոլոր ընտրական հանձնաժողովները — սկսած կենտրոնական ընտրական հանձնաժողովից մինչև շրջանայինները — կազմել աշխատավորների հասարակական կազմակերպությունների ու ընկերությունների ներկայացուցիչներից, աշխատավորների պատգամավորների համապատասխան Խորհրդի հաստատմամբ: Այդպիսով, նախագիծն առաջարկում է հրաժարվել Խորհուրդների կողմից նշանակվող ընտրական հանձնաժողովներից: Նշանակման սկզբունքի փոխարեն, նախագիծն առաջարկում է մտցնել աշխատավորների հասարակական կազմակերպություններից ու ընկերություններից ներկայացուցչություն ուղարկելու սկզբունքը:

Ինչպես յերևում է վերոհիշյալից, ընտրական հանձնաժողովների ֆունկցիաները սահմանափակված են միմիայն այն խնդիրներով, վորոնք բղխում են ընտրությունների ընթացքում ընտրական որենքի անշեղ կատարումն ապահովելու անհրաժեշտությունից, այն է՝ գրանցել թեկնածուներին, ուղարկել ընտրական բյուլետենները, հաշվել ձայները և հետևել ընտրական որեն-



քի կատարմանը: Ընտրական հանձնաժողովներին ուրիշ վոչ մի ֆունկցիա և ուրիշ վոչ մի իրավունք չի տրվում:

Սրա վերաբերյալ ևս իրենց ընթերցողներին խաբում են գերմանական ֆաշիստական կուսակցության ոֆիցիոզի սանձարձակ ստախոսները: «Ֆյոլկիշեր Բեոբախտերի» նույն հուլիսի 3-ի համարում նրանք գրում են, թե, իբր պաշտոնական ընտրական հանձնաժողովներին իրավունք է տրված առանց առանձին դժվարությունների մերժելու սկզբնական կազմակերպությունների ընտրական առաջարկները:

Յես չեմ ձանձրացնի ձեզ այդ սուտը հերքելով: Պարոն ֆաշիստները նույնիսկ չեն մատնանշում, թե վոր հոդվածում են կարդացել նրանք իրենց այդ հաղորդագրությունը, և դա պատահական չէ, վորովհետև նրանք հնարել են ընտրական որենքում գոյություն չունեցող հոդված: Լավ կյանք ունենալուց չէ, վոր նմանորինակ մեթոդների յեն դիմում մարդիկ. ըստ յերևույթին սուտը նրանց գոյության պայմանն է:

Գերմանական ֆաշիստներից հետ չեն մնում նաև նրանց լեհ լակեյները. «Իլյուստրովանի Կուրյեր Պոձեննի» թերթը Մոսկվայից — բայց իրականում՝ յերևի Բեռ-

լինից — ստացած իր հուլիսի 4-ի հաղորդագրության մեջ հայտնում է, վոր ընտրական որենքի նախագիծն իբր թե կառավարական ընտրական հանձնաժողովին իրավունք է տալիս «փոխելու կազմակերպությունների թեկնածուական ցուցակները»: Դե, ի՞նչ կա վոր, այդ մեզ չի զարմացնում: Ինչպես յերևում է լեհական ֆաշիստական խնձորիկը գերմանական խնձորենուց հեռու չի ընկնում (ծափահարություններ, ծիծաղ):

Վորպեսզի այս կամ այն անկանոնության դեմ ուղղված վոչ մի բողոք չխուսափի հասարակական հսկողությունից, ընտրական որենքի նախագիծը սահմանում է զանազան բողոքներ քննելու հաստատուն կարգ:

Շրջանային ընտրական հանձնաժողովից պահանջվում է քվեարկման արձանագրության մեջ համառոտակի մտցնել շրջանային ընտրական հանձնաժողովին տրված դիմումների ու բողոքների և շրջանային ընտրական հանձնաժողովի կողմից ընդունված վորոշումների հակիրճ բովանդակությունը (հոդված 93-րդ):

Նույնպիսի պահանջ է առաջադրվում



նաև ոկրուգային ընտրական հանձնաժողովին (հոդված 102-րդ):

Կենտրոնական ընտրական հանձնաժողովի վրա յե դրվում ընտրական հանձնաժողովների սխալ գործողությունների առթիվ տրվող բողոքների քննարկումը և բողոքների վերաբերյալ վերջնական վորոշումներ կայացնելը:

Ընտրությունների արդյունքները վորոշելու ժամանակ սահմանված մի քանի ձևականություններ, վորոնք մտցված են ընտրական որենքի նախագծի 8-րդ գլխում, կարող են վորոշ ընկերների համար թվալ ավելորդ և նույնիսկ բյուրոկրատական· բայց այնտեղ, վորտեղ հարցը վերաբերում է բարձրագույն պետական որգանի ստեղծմանը, անհրաժեշտ է մեծագույն ուշադրություն· այստեղ վոչ մի ձևականություն ավելորդ չի լինի, յեթե դա լրացուցիչ յերաշխիք է ստեղծում Սահմանադրության և ընտրական որենքի ճշգրիտ պահպանման համար: Ընտրական բյուլետենները, վորոնք պարունակում են տվյալ ոկրուգի աշխատավորների հասարակական կազմակերպությունների և ընկերությունների կողմից պատգամավոր ընտրվելու համար առաջադրված բոլոր թեկնածուների անունները,

ընտրողներին տրվում են շրջանային ընտրական հանձնաժողովի շենքում (հոդված 78-րդ)։ Պատգամավոր ընտրվելու համար առաջադրված յուրաքանչյուր թեկնածուի վերաբերմամբ հանձնաժողովի քարտուղարի և շրջանային ընտրական հանձնաժողովի՝ այդ բանի համար լիազորված անդամի կողմից կազմվում է հաշվառման թերթիկ, յերկու որինակից բաղկացած (հոդված 89-րդ)․ շրջանային ընտրական հանձնաժողովն ոկրուգային ընտրական հանձնաժողովին ուղարկում է վոչ միայն քվեարկության արձանագրությունը, այլև յուրաքանչյուր թեկնածուի համար կազմված հաշվառման թերթիկի յերկու որինակները (հոդված 95-րդ)․ աշխատավորների պատգամավորների Խորհուրդը պարտավոր է ընտրական բյուլետենները պահել ընդհուպ մինչև մանդատները ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի կողմից հաստատվելը (հոդված 97-րդ) և այլն։

Քվեները հաշվելու ճշտությունն ապահովելու խնդիրն է հետապնդում նախագծի մեջ նախատեսված՝ քվեները հաշվելու հրապարակայնությունը։ Այդ հրապարակայնությունը ձեռք է բերվում արդեն իսկ ընտրական հանձնաժողովների կազմի շնորհիվ, վորոնք կազմվում են վոչ թե



իշխանության որգանների կողմից նշանակված անձնավորություններից, այլ աշխատավորների հասարակական կազմակերպությունների ու ընկերությունների կողմից առաջադրված անձնավորություններից։ Ընտրական որենքի նախագիծը, սակայն չի սահմանափակվում դրանով և նախատեսում է, վոր ձայները հաշվելիս ինչպես շրջանային ընտրական հանձնաժողովի, այնպես և ոկրուգային ընտրական հանձնաժողովի շենքերում ներկա գտնվելու իրավունք ունեն աշխատավորների հասարակական կազմակերպությունների ու ընկերությունների՝ հատկապես այդ բանի համար լիազորված ներկայացուցիչները, ինչպես նաև մամուլի ներկայացուցիչները (հոդվածներ 85-րդ և 99-րդ)։

Աշխատավորների կամքի ճշգրիտ արտահայտումն ապահովելու նպատակն է հետապնդում ընտրական որենքի նախագծի առաջարկած այն կանոնը, վորի համաձայն ընտրված է համարվում միայն այն թեկնածուն, վորը կստանա ձայների բացարձակ մեծամասնությունը։ Յեթե թեկնածուներից վոչ մեկն ընտրությունների ժամանակ չի ստացել ձայների բացարձակ մեծամասնություն, ապա անհրաժեշտ է

(վոչ ուշ քան յերկու շաբաթվա ընթացքում) վերաքվեարկել այն յերկու թեկնածուներին, վորոնք ամենից ավելի մեծ թըվով ձայն են ստացել (հոդված 107-րդ):

Աշխատավորների կամքի ճշգրիտ արտահայտումն ապահովելու նույն այդ նպատակն է հետապնդում այն կանոնը, վորի համաձայն այն ընտրական օկրուգներում, վորտեղ ըստ ընտրական օկրուգի տրված ձայների թիվն ընտրողների կեսից պակաս է կազմում, ընտրությունները հայտարարվում են չեղյալ և նոր ընտրություններ են կատարվում:

Վերջապես նախագիծն առաջարկում է ամենախիստ պատիժ սահմանել բոլոր նրանց համար, ովքեր ընտրությունների ժամանակ կփորձեն խախտել ԽՍՀՄ Սահմանադրությունը կամ «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրությունը»:

Յես վերջացնում եմ ընտրական օրենքի բնութագրումը: Յես կարծում եմ՝ դուք համաձայն եք, վոր ընտրական օրենքի նախագծի հիմնական առանձնահատկությունը, լիովին համապատասխանելով Ստալինյան Սահմանադրության բնույթին, հանդիսանում է «նրա հետևողական և



մինչև վերջը պահպանված դեմոկրատիզմը» (Ստալին): (Ծափահարություններ):

Խորհրդային ընտրական օրենքը վոչ միայն ընտրական իրավունքներ է տրամադրում քաղաքացիններին, այլև ստեղծում է բոլոր անհրաժեշտ պայմանները, վորպեսզի նրանք գործնականում կարողանան գործադրել այդ իրավունքները և ակտիվ կերպով մասնակցեն ընտրություններին:

Ընտրական օրենքն օգտագործում է այն բոլոր լավագույնը, ինչ վոր այդ բընագավառում ստեղծել են բուրժուա-դեմոկրատական յերկրները, և դրա հետ միասին՝ քաղաքացիների ձևական իրավունքները վերածելով իսկական իրավունքի, յերաշխավորված իրավունքի, հսկայական քայլ է կատարում դեպի առաջ՝ սոցիալիստական դեմոկրատիայի պայմաններին համապատասխան, մի դեմոկրատիայի, վորը փոխարինում է բուրժուական դեմոկրատիային (ծափահարություններ):

# IV.

# ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԵՋ ՅԵՂԱԾ ԹԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Ընկերնե՛ր, մեր Խորհուրդները հանդիսանում են պետական կառավարման անհամեմատ ավելի բարձր ու առաջավոր ձև, քան թե կառավարման վորևէ ամենից ավելի դեմոկրատական բուրժուական ձևը: Ժողովրդական մասսաները ընտրում և գնահատում են Խորհուրդները, վորպես իրենց ժողովրդական իշխանության օրգաններ: Խորհուրդների միջոցով է իրականացվում բանվոր-գյուղացիական դաշինքը, Խորհուրդների միջոցով է բանվոր դասակարգն իրականացնում ղեկավարությունը գյուղացիության նկատմամբ, Խորհուրդների միջոցով են աշխատավորները մասնակցում յերկրի կառավարմանը, սոցիալիստական շինարարությանը: Խորհուրդներում և Խորհուրդների միջոցով է իրականացվում անկուսակցականների ու կոմունիստների անընդմիջելի, ճկուն և ամուր կապը: Խորհուրդները կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ կառուցեցին սոցիալիստական հասարակու-



թյուն, հետամնաց Ռուսաստանը դարձրին հզորագույն մի պետություն, հակառակ ամբողջ աշխարհի իմպերիալիստների և նրանց տրոցկիստական-բուխարինյան գործակալների ու լրտեսների ոտնձգությունների, պաշտպանեցին յերկրի անկախությունը:

Սակայն դրանից բնավ չի հետևում, վոր մեզ մոտ չկան վատ աշխատող հիմնարկներ. մեզ մոտ այդպիսի հիմնարկներ քիչ չեն: Դրանից չի հետևում, վոր մեզ մոտ չկան աշխատավորների պատգամավորների խորհուրդներ, վորոնք վատ են կատարում իրենց պարտականությունները, մենք այդպիսի Խորհուրդներ քիչ չունենք: Դրանից չի հետևում, վոր մեզ մոտ չկան վատ աշխատող, մասսաներից կտրված, բյուրոկրատացած մարդիկ, այդպիսի մարդիկ դժբախտաբար մեզ մոտ նույնպես քիչ չեն: Նշանակում է,— իսկ այս բանն անշեղորեն արմատացնում է մեր գիտակցության մեջ ընկեր Ստալինը,— վնաս հասցված կլիներ Խորհրդային իշխանությանը, յեթե Խորհուրդների նվաճումներն ընտրությունների նախապատրաստման ժամանակ հիմք ծառայեյին գդատության բթացման և Խորհուրդների այ-

կամ այն ղեկավարի, պատգամավոր ընտրվելու համար առաջադրված այս կամ այն թեկնածուի աշխատանքի թերությունների քննադատության ու. ինքնաքննադատության թուլացման համար:

Սկսեմ գյուղական խորհուրդներից: Շատ գյուղական խորհուրդներում դրամական ու նատուրալ հարկերի գանձման աշխատանքը վեր է ածվել հիմնական աշխատանքի, իսկ աշխատանքի մյուս բոլոր ճյուղերը—տնտեսական, կուլտուրական ու քաղաքական—վեր են ածվել յերկրորդականի: Ֆինժողկոմատի և Մթերման կոմիտեների օրգաններն ապօրինի կերպով փորձում են այդպիսի խորհուրդները դարձնել իրենց ձրի, օժանդակ ապարատը՝ հարկերի գանձման ասպարեզում:

Փաստ է, որ Մթերման կոմիտեյի լիազորի դերը շատ հաճախ հանգում է այն բանին, որ նա գյուղխորհուրդներին բլանկներ է մատակարարում, փաքսիմիլե ու կնիք է դնում մթերումների վերաբերյալ գյուղխորհրդի լրացրած պարտավորությունների տակ և մթերումների անբավարար ընթացքի դեպքում շրջգործկոմի կամ շրջկոմի միջոցով պահանջում է պատժել գյուղխորհրդի հանցավոր նա-



խագահին: Շատ շրջանային ֆինբաժիններ իրենց հերթին, իրենց համար չափազանց հարմար ձևով, իրենց ամբողջ աշխատանքը հանգեցրել են այն բանին, որ գյուղխորհուրդներին հիշեցնում են այս կամ այն հարկը մուծելու ժամկետները, իրենց մոտ են կանչում գյուղխորհուրդների նախագահներին՝ հուշ տալու համար, առաջարկում են ուժեղացնել դրամական միջոցների գանձումը և դարձյալ շրջկոմի կամ շրջգործկոմի միջոցով պահանջում են պատժել գյուղխորհրդի այս կամ այն նախագահին:

Այդպիսի սիստեմն առավել ևս սխալ է, որովհետև հարկային կազմակերպությունները, ինչպես նաև մթերող կազմակերպությունները, ունեն ոչ փոքր ապարատ, որը վարձատրվում է պետության կողմից:

Զարմանալի չէ, որ մի քանի գյուղական խորհուրդներ կորցրել են այն պատկերացումը, որ կան աշխատանքի նաև այլ բնագավառներ՝ նույնքան կարևոր, ինչպես և հարկայինը: Փաստ է, օրինակ, որ Օմսկի մարզի Կորմիլովկի շրջանի Կորմիլովկի գյուղխորհրդի 73 որոշումների ու կարգադրությունների մեջ չկա

վոչ մի վորոշում գյուղի մասին, բուժակի մասին և այլն:

Սա չի նշանակում ի հարկե, վոր խորհուրդներին պետք է արգելել հարկերով զբաղվելը: Նույնիսկ յեթե Ֆինժողկոմատը և Մթերման Կոմիտեն սկսեն աշխատել իրենց ապարատի միջոցով, ինչպես այդ պահանջում է կառավարությունը, ապա դա խորհուրդների վրայից չի վերացնի պատասխանատվությունը բոլոր հարկերը ժամանակին գանձելու համար: Խոսքն այն մասին է, վոր հարկային աշխատանքին զուգընթաց— վորպես վոչ պակաս կարևոր, իսկ առանձին դեպքերում՝ նաև ավելի կարևոր աշխատանքի,—խորհուրդներն աշխատանք կատարեն առևտրի, կուլտուրայի, առողջապահության և այլ բնագավառում բնակչության սպասարկելու ուղղությամբ:

Իսկ առանձին խորհուրդների՝ հենց միայն հարկային աշխատանքի վրա կենտրոնանալու պրակտիկան, անխուսափելիորեն առաջ է բերում գյուղական խորհուրդների կտրվածություն՝ բնակչությունից, խորհուրդների դերի նվազում՝ վորպես տնտեսական—քաղաքական և կուլտուրական ղեկավարների:



Ահա թե ինչի հետևանք եր ԽՍՀՄ Ժողկոմխորհի և Համ Կ(բ)Կ Կենտկոմի հայտնի վորոշումը՝ հարկային աշխատանքը խորհուրդներից վերցնելու և հարկային ու մթերման աշխատանքն անմիջականորեն Մթերման Կոմիտեյի և Ֆինժողկոմատի ապարատների վրա դնելու մասին:

Անցնում եմ այն անթույլատրելի պրակտիկային, վոր տեղի յե ունեցել մի շարք քաղաքներում, մի պրակտիկա, վորը մի քանի քաղաքային խորհուրդներ վերածում եր շրջանային գործկոմներին կից ոժանդակ ապարատի: Մի շարք կետերում, վորտեղ քաղաքը միաժամանակ շրջանային կենտրոն ե, հաստիքների կրճատման պատրվակով քաղաքային խորհուրդները սովորաբար ունեն միայն կոմունալ բաժին և յերբեմն նաև ֆինանսական բաժին, իսկ հիվանդանոցները, դպրոցները, խանութները վերցված են քաղխորհրդի տնորինությունից և հանձնված են անմիջականորեն շրջանային գործադիր կոմիտեների համապատասխան բաժինների տնորինությանը: Այսպես որինակ, Կոլոմնայում, վորն ունի մեքենաշինական խոշոր գործարան և 70 հազար բնակիչ—դպրոցները, հիվանդանոցները, սոցիալական

ապահովության հիմնարկները, խանութները, փոստը, ճաշարանները յենթարկված են անմիջականորեն շրջգործկոմի բաժիններին և վերցված են քաղխորհրդի իրավասության տակից: Քաղխորհուրդն ունի միայն կոմունալ և ֆինանսական բաժիններ: Նույնպիսի դրության մեջ է գտնվում նաև Ռյազանը, այդ նախկին նահանգական քաղաքը, վորն ունի 70 հազար բնակիչ, այդ թվում՝ 20 հազար բանվոր ու ծառայող: Ռյազանի քաղխորհուրդն ունի միայն կոմունալ և ֆինանսական բաժիններ, ըստ վորում ֆինանսական բաժինն ստեղծվել է միայն վերջերս:

Ավելորդ է ասել, վոր քաղխորհուրդների իրավունքները սեղմելու այդպիսի պրակտիկան հակասում է Սահմանադրությանը, վորը նախատեսում է տեղական տնտեսական և կուլտուրական-քաղաքական հիմնարկների յենթարկումը համապատասխան տեղական խորհուրդներին և նախատեսում է մասնավորապես քաղաքային խորհուրդներում ունենալ ֆինանսական, կոմունալ տնտեսության, ներքին առևտրի, առողջապահության, ժողովրդական կրթության, սոցիալական ապահովման, ընդհանուր բաժիններ, պլանային



հանձնաժողով, կադրերի սեկտոր՝ գործկոմի նախագահին կից, և բացի դրանից, քաղաքի առանձնահատկություններին համապատասխան՝ տեղական արդյունաբերության ու հողային բաժիններ:

Նման պրակտիկա հատկապես վնասակար է ներկայումս, յերբ քաղաքները մեկ տասնամյակի ընթացքում կրկնապատկել են իրենց բնակչության թիվը և միլիոնավոր նոր բանվորներ ու ծառայողներ հենց խորհուրդների միջոցով անցնում են պետական կառավարման դպրոցը: Նման պրակտիկան հատկապես անթույլատրելի յե այն բանից հետո, յերբ Համկ(բ)Կ Կենտկոմի նախորդ պլենումում ընկեր Ստալինն այնպիսի ուժով պարզաբանեց բանվոր դասակարգի ղեկավար դերը բարձրացնելու անհրաժեշտության հարցը:

Այստեղից պետք է հետևություն անել, վոր անհրաժեշտ է վերացնել քաղխորհուրդների աշխատանքի մեջ յեղած թերությունները, քաղխորհուրդներում կազմակերպել Սահմանադրությամբ նախատեսված բաժիններ, տեղական տնտեսական ու կուլտուրական հիմնարկները յենթարկել նրանց, բարձրացնել նրանց նշանակությունը, այն հաշվով, վոր նրանք դյու

ղական վայրերի Խորհուրդների համար օրինակ ծառայեն այն բանի, թե ինչպես պետք է կազմակերպել խորհրդային աշխատանքը, ինչպես պետք է կազմակերպել ժողովրդական վերահսկողությունը գործադիր օրգանների աշխատանքի նկատմամբ, ինչպես պետք է ժողովրդական մասսային համախմբել Խորհուրդների շուրջը, ինչպես պետք է ղեկավարել կուլտուրական-քաղաքական ու տնտեսական շինարարությունն իր տերիտորիայում:

Մենք Խորհուրդներում ունենք ժողովրդական մասսաներին կառավարման մեջ ներգրավելու այնպիսի հիանալի ապարատ, ինչպիսին են Խորհուրդների սեկցիաները: Միլիոնավոր պատգամավորներ կան Խորհուրդների սեկցիաների մեջ: Խորհուրդների պատգամավորները իբրև կանոն, հասարակական յեռանդով և ժողովրդի օգտին աշխատելու ծարավով են գործում սեկցիաների մեջ: Ստուգումը, սակայն, ցույց է տալիս, վոր հաճախ սեկցիաների անդամները, վորոնք վոգևորությամբ աշխատանքի եյին ձեռնարկել սեկցիայում, շուտով սառում են նրանցից, սկսում են խուսափել սեկցիայի նիստերից,—



սեկցիաները քայքայվում են, մնում թղթի վրա: Բանն այստեղ այն է, վոր բաժինների վարիչները, Խորհուրդների տնտեսության համապատասխան ճյուղերի ղեկավարները հաճախ սեկցիաները վեր են ածում իրենց ոժանդակ ապարատի, վորոնք անզոր են վորևէ փոփոխություն կատարելու համապատասխան բաժնի կամ վարչության աշխատանքի մեջ: Բանը նաև այն է, վոր Խորհուրդների սեկցիաների կազմը Խորհուրդների կողմից չի ընտրվում, Խորհուրդների պատգամավորները սովորաբար սեկցիաների մեջ դրվում են Խորհուրդների կազմբաժինների ապարատի միջոցով:

Դեռ ավելին, այն բազմաթիվ դեպքերում, յերբ Խորհուրդների սեկցիաները նախաձեռնություն են յերևան բերում, հայտաբերում են թերությունները, պահանջում են ուղղել դրանք, քննադատում են վարիչներին,—վարիչները հաճախ սկսում են արհամարհել նրանց, անտեսել, դադարում են հաճախել սեկցիայի նիստերին, իրենց փոխարեն սեկցիայի նիստին ուղարկում են հինգերորդական աշխատողների և դրանով իսկ սեկցիաներն աստիճանաբար զերոյի յեն հավասարվում:

Ես այստեղ կարող եյի բազմաթիվ օրինակներ բերել Մոսկվայի, Լենինգրադի, Դնեպրոպետրովսկի, Տաշքենդի Խորհուրդների սեկցիաների հիմնայի աշխատանքի վերաբերյալ, բայց, դժբախտաբար, այդ բոլոր կետերի մասին յես ստիպված պետք ե լինեյի միաժամանակ բերել սեկցիաներն այս կամ այն բյուրոկրատի կողմից անտեսվելու բազմաթիվ փաստեր, բյուրոկրատների, վորոնք իրենց բարձր են յերևակայում Խորհուրդների առջև պատասխանատվություն ունենալուց:

Ահա թե ինչու պետք ե ներկայումս քննարկել Խորհուրդներում գոյություն ունեցող և վոչ վոքի կողմից չքննարկված սեկցիաները հանձնաժողովներով փոխարինելու կամ թե սեկցիաները տնտեսական, կուլտուրական ու քաղաքական կյանքի հիմնական հարցերի վերաբերյալ Խորհուրդների կողմից ընտրված հանձնաժողովների հետ զուգակցելու հարցը, որինակ՝ բյուջետային, դպրոցական, առողջապահության, բնակարանային, կոմունալ, առևտրի, գյուղատնտեսական և այլն, այնպես վոր հանձնաժողովներին իրավունք տրվի վերահսկողություն ունենալու Խորհրդի համապատասխան բաժնի կամ վար-



չության բոլոր գործերի ու թղթերի նկատմամբ՝ առանց բացառության, իսկ վարիչները պարտավոր լինեն հանձնաժողովի անդամների հարցումով իրենց բացատրությունները տալ վոչ ավելի քան յերկու որվա ընթացքում:

Հրատապ ե դառնում նաև Խորհուրդների հանձնաժողովներին հետևյալ իրավունքները տրամադրելու հարցը— բոլոր դեպքերում, յերբ հանձնաժողովը բաժնի վարիչի աշխատանքը գտնում ե անբավարար, Խորհրդի նախագահը պարտավոր ե մեկ շաբաթվա ընթացքում հրավիրել Խորհրդի պլենում, վորը պետք ե լսի հանձնաժողովի զեկուցումն ու վարիչի բացատրությունները և վորոշի, թե ինչպիսի միջոցառումներ են անհրաժեշտ դրությունն ուղղելու համար, կամ համապատասխան բաժնի վարիչի անուղղելի լինելու դեպքում վորոշի վարիչին աշխատանքից հանելու հարցը:

Վորոշ բաժնի վարիչներ, վորոնք իրենց պատկերացնում են առողջապահության, ֆինանսների, հողագործության կամ առևտրի ասպարեզում անփոխարինելի մոնոպոլիստներ ու մասնագետներ, գուցե իրենց վիրավորված կզգան նման առաջարկի առթիվ, վորն ուժեղացնում ե Խորհրդի չար-

քային անդամների և ամբողջ Խորհրդի վերահսկողությունը նրանց աշխատանքի նկատմամբ: Ինչ արած, թող վիրավորվեն:

Մեր բոլոր աշխատողները պետք է հասկանան, որ չկան այնպիսի մարդիկ, որոնք կարողանան աշխատանքի ասպարեզում անվերահսկողության հավակնություն ունենալ, որ ամեն մի աշխատողի վերահսկման յենթակա լինելը բղխում է խորհրդային իշխանության հիմունքներից, որ միայն ներքևից յեկող վերահսկողության օգնությամբ, որը լրացնում է վերևից յեկող վերահսկողությունն ու ղեկավարությունը, կարելի յե բարելավել Խորհուրդների աշխատանքը (ծափահարություններ):

Խորհուրդների աշխատանքի մեջ յեղած խոշոր թերություններից մեկն է հանդիսանում գործերը վարելու սահմանված դեմոկրատական կարգի խախտումը: Լինում են, օրինակ, այնպիսի Խորհուրդներ և նրանց գործադիր կոմիտեներ, որոնք նիստեր են գումարում և որոշումներ են ընդունում առանց անհրաժեշտ կվորումի:

Փաստ է, որ Օդեսայի քաղխորհրդի նախագահության 1936 և 1937 թվականների ընթացքում տեղի ունեցած բոլոր նիս-



տերը, Դնեպրոպետրովսկի մարզգործկոմի բոլոր նիստերի յերկու յերրորդ մասը, տեղի յեն ունեցել կվորումի բացակայության պայմաններում:

Աշխատավորների կենսական շահերին վերաբերող կարևորագույն որոշումները հաճախ ընդունվում են «հարցման կարգով»: Փաստ է, որ Չելյաբինսկի մարզգործկոմի կողմից լուծված բոլոր հարցերի յերկու յերրորդ մասից ավելին, Օրջոնիկիձեյի յերկրգործկոմի կողմից լուծված հարցերի 90 տոկ. ավելին, Սվերդլովսկի մարզգործկոմի կողմից լուծված հարցերի 70 տոկոսից և Ազով–Սևծովյան յերկրգործկոմի կողմից լուծված հարցերի 80 տոկոսից ավելին լուծվել են հարցման կարգով:

Նախագահությունների և գործադիր կոմիտեների կողմից խորհրդային գործերի լուծման այդպիսի պրակտիկայի հետ սովորաբար կապվում է Խորհուրդների փոխարինումը նրանց գործադիր կոմիտեների կողմից, գործադիր կոմիտեների փոխարինումը՝ նախագահությունների կողմից և Խորհուրդների պլենումների օգտագործումը գերազանցապես այս կամ այն հանդիսավոր դեպքի առթիվ շաղակրատելու համար:

Փաստ է, վոր Դնեպրոպետրովսկի քաղխորհրդի 1936 թվականին գումարված 9-ը պլենումներից 4-ը յեղել են «հանդիսավոր», Ոմսկի քաղխորհրդի 1936 թվականին տեղի ունեցած 10 պլենումներից 5-ը յեղել են «հանդիսավոր», Զապորոժյեյի քաղխորհրդի 15 պլենումներից 11-ը՝ «հանդիսավոր»:

Կան նաև, ճիշտ է, համեմատաբար փոքրաթիվ դեպքեր, յերբ խորհուրդների պլենումները փոխարինվում են այսպես կոչված «խորհուրդների ակտիվի» հետ համատեղ նիստեր գումարելով:

Թե ինչի յեն հասցնում այսպես կոչված ակտիվի հետ համատեղ նիստերը, յերևում է այդպիսի նիստերի համար տիպիկ Յարոսլավլի մարզի Զակոբյակինսկի գյուղխորհրդի օրինակից. Խորհրդի 36 պատգամավորներից նիստերին մասնակցում են 12 հոգի, բայց դրա փոխարեն նիստին մասնակցում և քվեարկում են 60-ից ավելի այսպես կոչված «ակտիվիստներ»:

Գործերը վարելու դեմոկրատական կարգի այդ և դրանց նման խախտումներն անթույլատրելի յեն հատկապես նրա համար, վորովհետև դրանք հող են ստեղծում խորհրդային աշխատողների անպա-



տասխանատվության համար, դժվարացնում են վերահսկողությունը խորհրդային աշխատողների աշխատանքի նկատմամբ:

Մի քանի խոսք խորհուրդների վորոշ ղեկավարների կողմից բողոքները քննարկելու կարգի մասին: Կան խորհուրդների այնպիսի ղեկավարներ և հատկապես գործկոմների բաժինների վարիչներ, վորոնք ամիսներով շարքային քաղաքացիներին չեն ընդունում և նույնիսկ չեն կարողանում ընդունելության ժամեր սահմանել: Շարքային քաղաքացիների բողոքները մի քանի գործկոմներում ու բաժիններում ամիսներով մնում են առանց քննարկման: Դեռ ավելին, հաճախ բողոքներն ուղարկվում են քննարկման նույն այն օրգաններին ու անձանց, վորոնց գործողությունների առթիվ տրված է բողոքը:

Հարկ չկա խոսելու այն մասին, վոր շարքային քաղաքացիների բողոքների անտեսման և նրանց նկատմամբ արհամարհական վերաբերմունքի նման պրակտիկան վոչ մի ընդհանուր բան չունի խորհրդային սիստեմի հետ: Անհրաժեշտ է, ըստ յերևույթին, պարտադիր պրակտիկա դարձնել շարքային քաղաքացիների բողոքների, դիմումների ու հարցումների ըն-

դունման համար ամենօրյա ընդունելության ժամեր սահմանելը (որական առնվազն յերկու ժամ), ինչպես գործկոմների նախագահների, այնպես և բաժնի վարիչների կողմից, այդ ժամերին արգելելով վորևէ ժողով գումարելը, հիմնարկից բացակայելը կամ ապարատի աշխատողներին ընդունելը:

Խորհուրդների, գործկոմների վորոշ ղեկավարների կողմից անտեսվում է որենքների խստիվ պահպանման անհրաժեշտությունը: Համապետական որինականությունը Խորհուրդների այդպիսի ղեկավարների կողմից փոխարինվում է իրենց սեփական հայեցողությամբ:

Որենքների խախտման որինակ կարող են ծառայել մի քանի տեղական Խորհուրդների կողմից պարտադիր վորոշումներ հրատարակելու պրակտիկան, ինչպես նաև մի քանի ժողկոմատների կողմից ի կատարումն որենքների հրահանգներ հրատարակելու պրակտիկան:

Փաստ է նաև, վոր որենքների խախտման այդ պրակտիկան ոգտագործել են մեր թշնամիները, այն բոլոր դեպքերում, յերբ նրանց հաջողվում եր այս կամ այն պաշտոնով սողոսկել Խորհուրդների մեջ: Յեվ



այդ զարմանալի ել չե, վորովհետև չե վոր խորհրդային որենքները, վորոնք պաշտպանում են բանվորներին ու գյուղացիներին, ատելի յեն կապիտալիզմի պարոնայք-ռեստավրատորների և գերմանա-ճապոնական ֆաշիզմի գործակալների համար, վորոնց հարկավոր են ֆաշիստական որենքներ, այսինքն այնպիսի որենքներ, վորոնք ուղղված լինեն բանվորների և գյուղացիների դեմ: Տրոցկիստական բանդիտները, վորոնք խաբեության ճանապարհով սողոսկել եյին Մագնիտոգորսկի քաղխորհրդի ղեկավարության մեջ, մեկ տարվա ընթացքում, որինակ, տուգանել եյին ավելի քան 5500 հոգու, այդ ճանապարհով դժգոհություն առաջացնելով բնակչության մեջ դեպի Խորհրդային Իշխանությունը:

Ներկայումս խորհրդային դատարանի կողմից դատապարտված Լեպելյան շրջգործկոմի նախագահը, վորը հայտնի յե լեպելյան այլանդակությունների հանցավորների դատական պրոցեսի՝ մամուլում հրատարակված հաշվետվությունից, Լեպելյան շրջկոմի ղեկավարության մեջ սողոսկած տրոցկիստի և բանդիտի ղեկավարությամբ այդ նախագահն ինքն ապորինի

տուգանքներ էր դնում գյուղացիների վրա և ինքն էլ անուրդով վաճառում էր իր դըրած տուգանքները չմուծող գյուղացիների գույքը:

Ըստինքյան հասկանալի յե, վոր որենքը բյուրոկրատների այս կամ այն խմբի հայեցողությամբ նենգափոխելու պրակտիկան, հակախորհրդային գործ է, չէ՞ վոր գյուղացին, ասենք ինչպես և ամեն մի քաղաքացի, իշխանության մասին դատում է վո՛չ միայն նրանով, թե ինչպես է որենքը — թող որենքը հրաշալի լինի, բայց յեթե կատարողը խեղաթյուրում է այն իր գործունեյության մեջ, գյուղացին իշխանության մասին դատելու յե առաջին հերթին կատարողի գործողությունների հիման վրա:

Այդ կապակցությամբ հիշեցնեմ ընկեր Լենինի և ընկեր Ստալինի հայտնի ցուցումներն այդ առթիվ՝

Ընկեր Լենինը դատախազության առթիվ Քաղբյուրոյի համար ընկեր Ստալինի անունով ուղարկած նամակում գրում է՝

«... Որինականությունը չի կարող լինել կալուգյան և կազանյան, այլ պետք է լինի միասնական համառուսական և նույնիսկ միասնական ամբողջ խորհրդային հանրա-



պետությունների ֆեդերացիայի համար...

... Որինականությունը պետք է լինի մի. և՛ մեր ամբողջ կյանքում, և՛ մեր ամբողջ անկուլտուրականության մեջ հիմնական չարիքն են հանդիսանում հին ռուսական հայացքի և այն կիսավայրենիների սովորույթի թույլատրումը, վորոնք ցանկանում են պահպանել կալուգյան որինականությունը, ի տարբերություն կազանյան որինականությունից» (ԼԵՆԻՆ, հատոր 27, եջ 298—299):

Բոլորը հիշում են կուսակցության 17-րդ համագումարում ընկեր Ստալինի տված խարազանող գնահատականն այն մարդկանց, վորոնք իրենց պարտականությունը չեն համարում կատարել կուսակցության և կառավարության վորոշումները և վորոնք այդպիսով կործանում են կուսակցական ու պետական կարգապահության հիմունքները:

Անտարակույս, ընտրությունների ժամանակ Խորհուրդների աշխատանքի, այս կամ այն թեկնածուի, այս կամ այն հիմնարկի թերությունները խիստ քննադատության կենթարկվեն:

Խնդիրն այն է, վոր հասկանանք մեր Խորհուրդների աշխատանքի թերություն-

ները, գիտակցենք դրանք և մասսաներին ընտրությունների ժամանակ վոտքի հանենք՝ դրանք վերացնելու համար:

Խնդիրն այն է, վոր ժողովուրդն ստուգի պատգամավորի թեկնածուներին, վորպեսզի մեր իշխանության գերագույն որգան՝ ԽՍՀՄ Գերագույն Խորհուրդը մտնեն միմիայն սոցիալիզմի գործին, Լենինի-Ստալինի կուսակցության գործին նվիրված մարդիկ, վորպեսզի Խորհուրդների մեջ չանցնի ժողովրդի դիմակավորված թշնամիներից վոչ մեկը:

Բանվոր դասակարգի և գյուղացիության թշնամիներին չի կարելի բռնել, գործելով միայն վերևից, միմիայն այս կամ այն որգանը ղեկավարող կոմունիստների աչքով, թշնամիներին պետք է բռնել և՛ ներքևից, և՛ վերևից, վորովհետև այս կամ այն որգանը ղեկավարող կոմունիստները չեն կարող տեսնել ամեն ինչ: Բռնել և ջախջախել Խորհուրդների թշնամիներին, բանվորների և գյուղացիների թշնամիներին, կարելի յե միմիայն ծավալելով դեմոկրատիան ամբողջ թափով, ինչպես այդ պահանջում է կուսակցությունը, ինչպես այդ պահանջում է ընկեր Ստալինը, ինչպես այդ պահանջում է Ստալինյան Սահմանադրությունը (ծափահարություններ):



Այդ կապակցությամբ, թույլ տվեք հիշեցնել Ռոյ Հուարդի հետ տեղի ունեցած զրույցի ժամանակ ընկեր Ստալինի ասած խոսքերը՝

«... Ընտրական պայքարն աշխույժ կը լինի, նա կընթանա բազմաթիվ ամենասուր հարցերի շուրջը, գլխավորապես ժողովրդի համար առաջնակարգ նշանակություն ունեցող գործնական հարցերի շուրջը: Մեր նոր ընտրական սիստեմը ձիգ կտա բոլոր հիմնարկներն ու կազմակերպությունները, կհարկադրի նրանց բարելավել իրենց աշխատանքը: Ընդհանուր, հավասար, ուղղակի և գաղտնի ընտրությունները ԽՍՀՄ-ում, մի խարազան կլինեն ազգաբնակության ձեռքում՝ իշխանության վատ աշխատող որգանների դեմ»:

Այսպես ասաց ընկեր Ստալինը: Այդ նշանակում է, վոր ընտրությունները խիստ ստուգում, խիստ քննություն կլինեն խորհրդային աշխատողների համար — ով չի բռնի՝ կթռչի, և ըստ արժանվույն:

V.

## ՆՈՐ ԿԱԴՐԵՐ ԱՌԱՋԱԴՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Անցնում եմ այն հարցին, որն առանձնապես էական նշանակություն ունի խորհուրդների առաջիկա ընտրությունների տեսակետից խորհուրդներում կադրերի ընտրության հարցին: Խորհուրդները հանդիսանում են այն կազմակերպությունները, որոնց միջոցով միլիոնավոր մարդիկ հասնում են կառավարմանը: Սակայն, անտարակույս, խորհուրդների միջոցով նոր կադրեր առաջ քաշելու ասպարեզում կարելի յե ավելի բան անել:

Հաճախ, տեղի յեն ունենում բավականին լավ, հայտնի փաստեր, յերբ կոպտաբար խախտվում է խորհուրդների ամրապընդման կարևորագույն պայմանը, այսինքն խախտվում է խորհուրդների և նրանց գործադիր օրգանների անընդհատ լրացումը բանվոր դասակարգի և գյուղացիության մեջ աճող նոր, յերիտասարդ ուժերով:

Դժբախտաբար, յերիտասարդ, աճող ուժերի անբավարար առաջ քաշման պրակտիկան տեղի ունի նաև այնպիսի



խորհուրդներում, որոնց գլուխն են կանգնած հրաշալի աշխատողներ: Այդպիսի դեպքերում այդ պրակտիկան բոլորովին անհիմն յերկյուղ է առաջացնում նոր մարդկանց հանդեպ: Բավարար չափով նոր ուժեր առաջ չքաշող ընկերներից շատերն արդարանում են նրանով, որ իբրև թե կադրեր չկան, իսկ իրականում նրանք պարզապես յերբեմն վախենում են՝ չլինի՞ այդ նոր առաջ քաշված մարդիկ ավելի լավ աշխատողներ դուրս գան, քան իրենք: Այն, ինչ որ ասել եր ընկեր Ստալինը կուսակցության Կենտրոնական Կոմիտեյի Պլենումում — յեթե մենք զբաղվեյինք մարդկանց առաջ քաշմամբ, ապա կադրերի ավելցուկ կլիներ — յես կարծում եմ ամենից ավելի վերաբերում է հատկապես խորհուրդներին:

Ֆաբրիկների, գործարանների, տրանսպորտի, խորհտնտեսությունների, կոլտնտեսությունների, մեքենատրակտորային կայանների, մեր խորհրդային հիմնարկների աշխատողների մեջ կան հարյուրավոր ու հազարավոր մարդիկ, որոնք վաղուց գերաճել են այն աշխատանքի նկատմամբ, որը կատարում են իրենք. պետք է միայն մի քիչ ավելորեց–

նել և ոգնել նրանց և մենք կստանանք Խորհուրդներին անհրաժեշտ իսկական աշխատողներ, մարդիկ, վորոնք ընդունակ կլինեն պաշտպանելու բանվոր դասակարգի և գյուղացիության շահերը աշխատավորների ամեն մի թշնամու դեմ, գործարար մարդիկ, վորոնք գիտեն և ցանկանում են աշխատել և վոչ թե շաղակրատել, սոցիալիզմի գործին և աշխատավորների շահերին նվիրված մարդիկ՝ թե՛ կոմունիստներ, և թե՛ անկուսակցականներ:

Ապա անկուսակցականների մասին: Մինչդեռ միլիոնավոր անկուսակցական բանվորներ, գյուղացիներ, ինտելիգենտներ դարձել են իսկական վոչ կուսակցական բոլշևիկներ, վորոնց մասին խոսել է ընկեր Ստալինը, գործկոմների կազմում և մանավանդ բաժինների ղեկավարների ու նրանց տեղակալների կազմում, անկուսակցականների թիվը միանգամայն անբավարար է: Կան Խորհուրդների ղեկավարներ, վորոնք պարծենում են վորպես «նվաճումով», թե իրենց մոտ բաժինների բոլոր ղեկավարները և նրանց տեղակալները կուսակցության անդամներ են: Կարիք կա՞ արդյոք ապացուցելու,



վոր անկուսակցականներին ցուցաբերվող արհամարհական վերաբերմունքը և անկուսակցականներին հետ դցելը հակասում է լենինյան-ստալինյան բոլշևիկյան կուսակցության տրադիցիաներին ու քաղաքականությանը: Կարիք կա՞ արդյոք ապացուցելու, վոր ավելի լավ կլիներ, որինակ, հողային որգանների և ժողովրդական լուսավորության որգանների գլուխն ունենալ ազնիվ և փորձված անկուսակցականներ, քան այդ պոստերում նստած այն մարդկանց, վորոնց միակ արժանիքն է հաճախ միայն այն, վոր նրանք ունեն կուսակցական տոմս:

Ապա կանանց մասին: Մինչդեռ ԽՍՀՄ-ի միլիոնավոր կանայք բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության գործին ցուցաբերվող նվիրվածության որինակներ, գիտակցության, անձնական ազնվության և ղեկավար լինելու ընդունակության որինակներ են տալիս, կանանց դերը Խորհուրդներում և մանավանդ գործկոմներում, ապարատում տեղի ունեցած բյուրոկրատական խեղաթյուրումների պատճառով, բավականաչափ չի աճում: Իհարկե, մեր Խորհուրդներում կանայք հարյուրապատիկ ավելի յեն,

քան բուրժուական պառլամենտներում, սակայն այդ բավական չէ:

Ի միջի այլոց, բնորոշ ե, վոր Խորհուրդների պատգամավորների կազմի մեջ, Խորհուրդների պատգամավորների կազմի միայն մի քառորդ մասը կանայք են, բայց շրջգործկոմների նախագահների կազմի մեջ ընդամենը 2 տոկոս կին կա, իսկ քաղխորհուրդների նախագահների կազմի մեջ՝ 6 տոկոս, գյուղխորհուրդների նախագահների կազմի մեջ՝ 6 տոկոս: Համարյա վոչ մի կին չի ընտրված վորպես յերկրային (մարզային) գործկոմի նախագահ կամ նախագահի տեղակալ: Պետք ե ասել, վոր այստեղ Մոսկվան ել առանձնապես լավ որինակ չի ծառայում: Մոսկվայի Խորհրդի կազմի մեջ 578 կին կա, իսկ Խորհրդի բաժինների ղեկավարների մեջ և նախագահության մեջ՝ միայն յերկու կին: Մոսկվայի 23 ռայոնական Խորհուրդներում, Խորհրդի վոչ մի կին նախագահ չկա և միայն մեկը Խորհրդի նախագահի տեղակալ ե:

Կնոջ թերագնահատման նմանորինակ պրակտիկան վոչ մի առնչություն չունի լենինյան-ստալինյան կուսակցության ծրագրի հետ, մի կուսակցություն, վորը



սոցիալիզմի միջոցով ազատագրված կնոջ մեջ ուժերի հսկայական աղբյուր ե տեսնում՝ Խորհուրդների աշխատանքն ամրացնելու և բարելավելու համար: Բավական ե վերհիշել այստեղ Կրեմլում, այս դահլիճում տեղի ունեցած կոլտնտեսային խորհրդակցություններից վորևե մեկը, վորպեսզի այլ ապացույցներ չփնտռենք, թե գոյություն ունեն հսկայական ռեզերվներ, վորոնց աճեցրել ե մեր յերկիրը հանձինս կանանց (ծափահարություններ):

Ել չեմ խոսում կոմյերիտականների մասին, վորոնց մեջ հարյուր-հազարավոր մարդիկ բավական տարիքի յեն հասել, ունեն կազմակերպական ու քաղաքական աշխատանքի բավականաչափ փորձառություն: Հարյուրավոր ու հազարավոր կոմյերիտականներ կարող են լուրջ, ղեկավար աշխատանք կատարել Խորհուրդներում:

Անհրաժեշտ ե ավելի՛ համարձակ առաջ քաշել անկուսակցականներին, կոմյերիտականներին ու կանանց, վորպես Խորհուրդների, նրանց գործկոմների անդամների և բաժինների ղեկավարներ, չմոռանալով Լենինի և Ստալինի այն մի

չորք ցուցումները, թե մարդուն այս կամ այն պոստը դրավելու արժանի յե դարձնում վոչ թե կուսակցական ստաժը, առավել ևս արտաքին սեռին պատկանելը, այլ միայն իսկական նվիրվածությունը սոցիալիզմի գործին և գործարար հատկությունները:

Վորպեսզի այդ գործը գլուխ գա, վորպեսզի արագ հիասթափություն առաջ չըգա, հարկավոր է միայն մի բան՝ ոգնել այդ մարդկանց սովորելու:

Պետք է ասել, վոր խորհրդային կադրերին սովորեցնելու գործը լավ դրության մեջ չէ: Կան խորհրդային աշխատողների հսկայական թվով դասընթացներ, բայց նրանք սովորեցնում են վոչ թե գյուղխորհուրդների նախագահներին և շրջգործկոմների նախագահներին, այլ հաճախ վորպես անպետք, խորհրդային աշխատանքից ազատված մարդկանց և, բացի դրանից, դրանք սովորեցնում են մեծ մասամբ վոչ այն, ինչ-վոր հարկավոր է, ժամանակի միայն չնչին մասը հատկացնելով Սահմանադրության ուսումնասիրմանը և խորհրդային աշխատանքի կազմակերպմանը:

Այստեղ խնդիրն այն է, վոր սովորեց-



նենք հատկապես խորհուրդների ղեկավարներին և ոգնենք նրանց աճելու:

Յես վերջացնում եմ: Ձեր քննությանը ներկայացվող ընտրական որենքի նախագիծն ամենից ավելի իրական յերաշխիքներ է տալիս իրականացնելու ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքները գաղտնի քվեարկությամբ:

Այդ յերաշխիքներում դարձյալ դրսևորվում է պրոլետարական դիկտատուրայի եյությունը, վորը, ինչպես մատնանշել է ընկեր Ստալինը, կայանում է նրանում, վոր պրոլետարական դեմոկրատիան, ի տարբերություն բուրժուականից, չի սահմանափակվում միմիայն քաղաքացիների ձևական իրավունքներն արձանագրելով, այլ հոգ է տանում այդ իրավունքների իրականացման պայմանների մասին, դրանք իրականացնելու հնարավորության, դրանք իրականացնելու միջոցների մասին:

Նույն այդ ընդհանուր ընտրական իրավունքը, վորը ճանաչում է բուրժուական դեմոկրատական յերկրների զգալի մասն իր սահմանադրություններում և ձևականորեն իրականացնում է ընտրությունների ժամանակ, վորը սակայն գործնականում պոչատվում է, կրճատվում է, վերացվում է տաս

նյակ յեղանակներով, հենց իր կապիտալիստական դեմոկրատիայի մեխանիզմի միջոցով, յեղանակներ, վորոնք հանում, դուրս են մղում բանվորներին, չքավոր գյուղացիներին և շարքային ինտելիգենտներին դեմոկրատիային ակտիվ մասնակցելուց,— մեր ընտրական օրենքի նախագիծն ընդհանուր ընտրական իրավունքը դարձնում է աշխատավորների ամբողջ մասսային քաղաքականության մեջ ներգրավելու գործիք, ամբողջ ժողովրդին դեմոկրատիայի ակտիվ մասնակիցը դարձնելու միջոց, իր ընտրյալների վրա ժողովրդական վերահսկողություն հաստատելու համապարփակ գործիք:

Այստեղ մեր կուսակցությունը, Խորհուրդները ղեկավարվում են 19 տարի առաջ Խորհուրդների 3-րդ համառուսական համագումարում ընկեր Ստալինի տված ցուցումով:

«Մեզ, բանվորների ստորին խավերի ներկայացուցիչներիս հարկավոր է, վոր ժողովուրդը վոչ միայն քվեարկող, այլև կառավարող լինի»:

Ընտրությունների գործը շատ լուրջ գործ է. դրան պետք է լրջորեն նախապատրաստվել: Ընտրություններին մնացել է



ընդամենը մի քանի ամիս, իսկ ընտրությունների նախապատրաստումը և ընտրությունների անցկացումը կպահանջեն մեծագույն կազմակերպվածություն:

Մեզ մոտ դեռ պատահում են այնպիսի տարօրինակ մարդիկ, վորոնք դեմոկրատիան հասկանում են վորպես անարխիկ սանձարձակություն, վորպես անտերության հաղթանակ: Ավելորդ է ասել, վոր դա մեր, բոլշևիկյան, լենինյան–Ստալինյան հայացքը չէ: Դեմոկրատիան անտերություն չէ, ընդհակառակը դեմոկրատիան նշանակում է կազմակերպված պետության առկայությունը, կառավարության առկայությունը, հասարակական կազմակերպությունների աշխատունակ կենտրոնների առկայությունը: Դեմոկրատիան հրաժարումն չէ կազմակերպվածությունից, ընդհակառակն դեմոկրատիան բարձրագույն կազմակերպվածություն է, կարելի յե ասել՝ կազմակերպվածության պսակը: Մեր պրոլետարական դեմոկրատիան նշանակում է և պահանջում է առաջին հերթին առավելագույն կազմակերպվածություն բանվոր դասակարգից, վորը ղեկավարում է բանվորա–գյուղացիական դաշինքը, նրա

ավանգարդից՝ Կոմունիստական կուսակցությունից:

ԽՍՀՄ-ի Սահմանադրության և Ստալինյան Սահմանադրությունից բխող ընտրական օրենքի անշեղ իրականացումը, անշուշտ կապահովի խորհրդային դեմոկրատիայի հետագա ծավալումը, պրոլետարական դիկտատուրայի բազայի ընդարձակումը: Ստալինյան Սահմանադրության և ընտրական օրենքի անշեղ իրականացումն անշուշտ, Խորհուրդների աշխատանքի թերությունների քննադատության և Խորհուրդների համար լավագույն մարդկանց առաջ քաշման հիման վրա, կապահովի վերևից մինչև ներքև Խորհուրդների աշխատանքի բարելավումը: Խորհուրդներին ցուցաբերվող ժողովրդական ոժանդակության ուժը քանիցս իրենց կաշվի վրա ստուգել են մեր թշնամիները: Վոր ամբողջ ժողովուրդը պարսպի նման կանգնած է ի պաշտպանություն Խորհուրդների, դրանում վերջերս մի ավելորդ անգամ համոզվեցին գերմանա-ճապոնական ֆաշիստները՝ տրոցկիստական կամ բուխարինական դիմակով. մեր բանվորա-գյուղացիական յերկիրը տրորեց նրանց փայտոջիլների նման (ծափահարություններ):



ԽՍՀՄ-ի նոր Սահմանադրության և Ստալինյան Սահմանադրությունից բխող ընտրական օրենքի անշեղ իրականացումը կապահովի ժողովրդական մասսաների ավելի մեծ համախմբումը Խորհուրդների շուրջը և ԽՍՀՄ-ի այնպիսի Գերագույն Խորհրդի ու աշխատավորների պատգամավորների այնպիսի խորհուրդների ընտրությունը, վորոնք Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, ընկեր Ստալինի ղեկավարությամբ, կկենսագործեն Ստալինյան Սահմանադրությունը, և ջախջախելով բանվոր դասակարգի ու գյուղացիության բոլոր և ամեն տեսակ թշնամիներին, կտանեն ԽՍՀՄ-ի ժողովուրդներին դեպի նորանոր հաղթանակներ՝ սոցիալիզմի կառուցման գործում (յերկարատև ծափահարություններ, բոլորը վոտքի յեն կանգնում):

## ԽՍՀՄ ԿԵՆՏԳՈՐԾԿՈՄԻ 7-ՐԴ ԳՈՒՄԱՐՄԱՆ 4-ՐԴ ՆՍՏԱՇՐՋԱՆԻ ՎՈՐՈՇՈՒՄԸ «ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆ» ՀԱՍՏԱՏՄԱՆ ՄԱՍԻՆ

ԽՍՀՄ․ Կենտրոնական Գործադիր Կոմիտեն ՎՈՐՈՇՈՒՄ Է․

Հաստատել «Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն Խորհրդի ընտրությունների մասին կանոնադրությունը»։

ԽՍՀՄ Կենտրոնական Գործադիր Կոմիտեյի նախագահ՝ Մ․ ԿԱԼԻՆԻՆ

ԽՍՀՄ Կենտրոնական Գործադիր Կոմիտեյի քարտուղար՝ Ա․ ԳՈՐԿԻՆ

ՄՈՍԿՎԱ, ԿՐԵՄԼ
1937 թ․ հուլիսի 9



# ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ

## ԳԼՈՒԽ I.

## ԸՆՏՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ

Հոդված 1.— *ԽՍՀՄ Սահմանադրության 134-րդ հոդվածի հիման վրա ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի պատգամավորների ընտրությունները ընտրողների կողմից կատարվում են ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ։*

Հոդված 2.— *ԽՍՀՄ Սահմանադրության 135-րդ հոդվածի հիման վրա պատգամավորների ընտրություններն ընդհանուր են— ԽՍՀՄ բոլոր քաղաքացիները, վորոնք դարձել են 18 տարեկան, անկախ ռասսայական*

ու ազգային պատկանելությունից, դավանանքից, կրթական ցենզից, նստակեցությունից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից և անցյալ գործունեությունից, իրավունք ունեն մասնակցելու պատգամավորների ընտրություններին և ընտրվելու ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի մեջ, բացառությամբ խելագարների և այն անձանց, վորոնք դատարանի կողմից դատապարտված են՝ ընտրական իրավունքների զրկումով:

Հոդված 3.— ԽՍՀՄ Սահմանադրության 136-րդ հոդվածի հիման վրա պատգամավորների ընտրությունները հավասար են — յուրաքանչյուր քաղաքացի ունի մեկ ձայն. բոլոր քաղաքացիներն ընտրություններին մասնակցում են հավասար հիմունքներով:

Հոդված 4. — ԽՍՀՄ Սահմանադրության 137-րդ հոդվածի հիման վրա կանայք ընտրելու և ընտրվելու իրավունքից օգտվում են տղամարդկանց հետ համահավասար:

Հոդված 5.— ԽՍՀՄ Սահմանադրության 138-րդ հոդվածի հիման վրա Կարմիր Բանակի շարքերում գտնվող քաղաքացիներն ընտրելու և ընտրվելու իրա-



վունքից օգտվում են բոլոր քաղաքացիների հետ համահավասար:

Հոդված 6.— ԽՍՀՄ Սահմանադրության 141-րդ հոդվածի հիման վրա ընտրությունների ժամանակ թեկնածուներն առաջադրվում են ըստ ընտրական օկրուգների:

## ԳԼՈՒԽ II.

## ԸՆՏՐՈՂՆԵՐԻ ՑՈՒՑԱԿՆԵՐԸ

Հոդված 7. — Ընտրողների ցուցակները կազմվում են քաղաքներում՝ աշխատավորների պատգամավորների քաղաքային Խորհրդի կողմից, իսկ ռայոնական բաժանում ունեցող քաղաքներում՝ ռայոնական Խորհրդի կողմից. գյուղական վայրերում՝ աշխատավորների պատգամավորների գյուղական (ստանիցայի, գյուղի, խուտորի, ղշլաղի, աուլի) Խորհրդի կողմից:

Հոդված 9.— Ընտրողների ցուցակների մեջ մտցվում են՝ ընտրությունների օրը 18 տարին լրացրած՝ այն բոլոր քաղաքացիները, վորոնք ունեն ընտրական իրավունք և ցուցակները կազմելու ժամանակին

բնակվում են (մշտապես կամ ժամանակավորապես) տվյալ Խորհրդի տերիտորիայում:

Հոդված 9. — Ընտողների ցուցակների մեջ չեն մտցվում այն անձինք, վորոնք դատարանի վճռով ընտրական իրավունքներից զրկված են՝ ընտրական իրավունքներից զրկելու վերաբերյալ դատավճռի մեջ սահմանված ամբողջ ժամանակամիջոցում, ինչպես նաև այն անձինք, վորոնք որենքով սահմանված կարգով ճանաչված են խելագար:

Հոդված 10. — Ընտրողների ցուցակներն ըստ յուրաքանչյուր ընտրական շրջանի կազմվում են այբբենական կարգով, մատնանշելով ընտրողի ազգանունը, անունը, հայրանունը, տարիքն ու բնակության վայրը և ստորագրվում են աշխատավորների պատգամավորների Խորհրդի նախագահի ու քարտուղարի կողմից:

Հոդված 11.— Ընտրողներից վոչ վոք չի կարող մտցվել մեկից ավելի ընտրական ցուցակի մեջ:

Հոդված 12.— Այն ընտրողների ցուցակները, վորոնք գտնվում են զինվորական մասերում և զինվորական միավորումներում, կազմվում են հրամանատարության



կողմից հրամանատարի և զինվորական կոմիսարի ստորագրություններով: Մյուս բոլոր զինվորական ծառայողներն ընտրողների ցուցակների մեջ մտցվում են ըստ բնակության վայրի, աշխատավորների պատգամավորների համապատասխան Խորհուրդների կողմից:

Հոդված 13.— Ընտրություններից 30 որ առաջ աշխատավորների պատգամավորների Խորհուրդը կախ է տալիս ընտրողների ցուցակները՝ ի տես բոլորի կամ ընտրողների համար հնարավորություն է ապահովում այդ ցուցակներին ծանոթանալու Խորհրդի շենքում:

Հոդված 14.— Ընտրողների ցուցակների բնագիրը պահվում է համապատասխանորեն՝ աշխատավորների պատգամավորների Խորհրդում և զինվորական մասում կամ զինվորական միավորման մեջ:

Հոդված 15.— Այն դեպքում, յերբ ընտրողն ընտրողների ցուցակի հրապարակման և ընտրությունների որվա միջև ընկած ժամանակամիջոցում փոխում է իր բնակության վայրը, աշխատավորների պատգամավորների համապատասխան Խորհուրդը կենտրոնական ընտրական հանձնաժողովի կողմից սահմանված ձևով նրան տալիս

է «քվեարկության իրավունքի վկայական» և ընտրողների ցուցակի մեջ նշում է — «մեկնեց»․ Նոր բնակավայրում — մշտական կամ ժամանակավոր — ընտրողը մտցվում է ընտրողների ցուցակի մեջ, ներկայացնելով ինքնության վկայական, ինչպես նաև «քվեարկության իրավունքի վկայական»․

Հոդված 16.— Ընտրողների ցուցակի մեջ անճշտություն լինելու վերաբերյալ (ցուցակի մեջ չմտցնելը, ցուցակից հանելը, ազգանվան, անվան, հայրանվան աղավաղումը, ընտրական իրավունքներից զրկված անձանց սխալ կերպով ցուցակների մեջ մտցնելը) հայտարարությունը տրվում է աշխատավորների պատգամավորների այն Խորհրդին, որը հրապարակել է ցուցակները:

Հոդված 17.— Աշխատավորների պատգամավորների Խորհրդի Գործադիր Կոմիտեն պարտավոր է յերեք որվա ընթացքում քննության առնել ընտրողների ցուցակի մեջ անճշտություն լինելու վերաբերյալ տրված յուրաքանչյուր հայտարարություն:

Հոդված 18.— Ընտրողների ցուցակի մեջ անճշտություն լինելու վերաբերյալ հայտարարությունը քննարկելուց հետո, աշխատավորների պատգամավորների Խորհր-



դի Գործադիր Կոմիտեն պարտավոր է կամ անհրաժեշտ փոփոխություններ մտցնել ընտրողների ցուցակի մեջ, կամ հայտարարություն տվողին գրավոր տեղեկանք տալ նրա հայտարարությունը մերժելու նկատառումների մասին․ աշխատավորների պատգամավորների Խորհրդի կայացրած վորոշման հետ համաձայն չլինելու դեպքում, հայտարարություն տվողը կարող է բողոք ներկայացնել ժողովրդական դատարանին:

Հոդված 19.— Ժողովրդական դատարանը պարտավոր է յերեք որվա ընթացքում դատական դռնբաց նիստում, հայտարարություն տվողի և Խորհրդի ներկայացուցչի ներկայությամբ, քննության առնել ցուցակի մեջ անճշտություն լինելու վերաբերյալ բողոքը և իր վճիռն անհապաղ հայտնել ինչպես հայտարարություն տվողին, այնպես և Խորհրդին: Ժողովրդական դատարանի վճիռը վերջնական է:

# ԳԼՈՒԽ III.

## ՄԻՈՒԹՅԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՅԵՎ ԱԶԳՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳՆԵՐԸ

Հոդված 20.— *ԽՍՀՄ Սահմանադրության 34-րդ հոդվածի հիման վրա Միության Խորհուրդն ընտրվում է ԽՍՀՄ քաղաքացիների կողմից, ըստ ընտրական օկրուգների:*

Հոդված 21.— *Միության Խորհրդի ընտրությունների ընտրական օկրուգը կազմվում է օկրուգին 300 հազար բնակիչ սկզբունքով: Միության Խորհրդի ընտրությունների յուրաքանչյուր ընտրական օկրուգ ուղարկում է մեկ պատգամավոր:*

Հոդված 22.— *ԽՍՀՄ Սահմանադրության 35-րդ հոդվածի հիման վրա Ազգությունների Խորհուրդն ընտրվում է ԽՍՀՄ քաղաքացիների կողմից, ըստ ընտրական օկրուգների: Ազգությունների Խորհրդի ընտրությունների ընտրական օկրուգը կազմվում է հետևյալ սկզբունքով— 25 օկրուգ՝ ըստ յուրաքանչյուր Միութենական հանրապետության, 11 օկրուգ՝ ըստ*



*յուրաքանչյուր ավտոնոմ հանրապետության, 5 օկրուգ՝ ըստ յուրաքանչյուր ավտոնոմ մարզի և մեկ ընտրական օկրուգ՝ յուրաքանչյուր ազգային օկրուգում: Ազգությունների Խորհրդի ընտրությունների յուրաքանչյուր ընտրական օկրուգ ուղարկում է մեկ պատգամավոր:*

Հոդված 23.— *Միության Խորհրդի և Ազգությունների Խորհրդի ընտրությունների ընտրական օկրուգները կազմվում են ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության կողմից:*

Հոդված 24.— *Միության Խորհրդի և Ազգությունների Խորհրդի ընտրությունների ընտրական օկրուգների ցանկը հրապարակվում է ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության կողմից, ընտրությունների օրը նշանակելու հետ միաժամանակ:*

# ԳԼՈՒԽ IV

## ԸՆՏՐԱԿԱՆ ՇՐՋԱՆՆԵՐ

Հոդված 25.— *Ընտրական բյուլետենները ընդունելու և ձայները հաշվելու համար, ընտրական օկրուգի մեջ մտնող*

քաղաքների ու ռայոնների տերիտորիան բաժանվում է ընտրական շրջանների, վորոնք ընդհանուր են լինում Միության Խորհրդի և Ազգությունների Խորհրդի ընտրությունների համար:

Հոդված 26.— Ընտրական շրջանները կազմվում են քաղաքներում՝ աշխատավորների պատգամավորների քաղաքային Խորհուրդների կողմից, ռայոնական բաժանում ունեցող քաղաքներում՝ աշխատավորների պատգամավորների ռայոնական Խորհուրդների կողմից, գյուղական վայրերում՝ աշխատավորների պատգամավորների շրջանային Խորհուրդների կողմից:

Հոդված 27.— Ընտրական շրջանները կազմվում են վոչ ուշ քան ընտրություններից 45 որ առաջ:

Հոդված 28.— Երկու հազար բնակչից ավելի չունեցող գյուղխորհրդի տերիտորիան կազմում է, իբրև կանոն, մեկ ընտրական շրջան. յուրաքանչյուր ստանիցայում, գյուղում, ղշլաղում, աուլում, վորոնք ունեն 500-ից մինչև վոչ ավելի քան 2000 բնակիչ, կազմակերպվում է առանձին ընտրական շրջան:

Հոդված 29.— Հեռավոր հյուսիսային ու արևելյան շրջաններում, վորտեղ գերակշռ-



ռում են մանր բնակավայրերը, թույլատրվում է կազմակերպել ընտրական շրջան առնվազն 100 հոգի բնակչությամբ:

Հոդված 30.— Այն քաղաքները, արդյունաբերական կենտրոնները, ինչպես նաև գյուղերն ու գյուղխորհրդի տերիտորիան, վորոնք ունեն 2000 բնակչից ավելի, ընտրական շրջանների բաժանվում են՝ մեկ ընտրական շրջանին 1500–2500 հոգի բնակչության հաշվով:

Հոդված 31.— Զինվորական մասերը և զինվորական միավորումները կազմում են առանձին ընտրական շրջաններ, վոչ պակաս քան 50 և վոչ ավելի քան 1500 ընտրողներով, վորոնք մտնում են ընտրական օկրուգի մեջ, ըստ այն վայրի, վորտեղ գտնվում է զորամասը կամ զինվորական միավորումը:

Հոդված 32.— Վոչ պակաս քան 50 ընտրող ունեցող այն նավերը, վորոնք ընտրությունների օրը նավարկության մեջ են գտնվում, կարող են կազմել առանձին ընտրական շրջաններ, վորոնք մտնում են ընտրական օկրուգի մեջ ըստ այն վայրի, վորտեղ գրանցված է նավը:

Հոդված 33.— Այն հիվանդանոցներին, ծննդատներին, սանատորիաններին, հաշ-

մանդամների տներին կից, վորոնք ունեն առնվազն 50 ընտրող, ստեղծվում են առանձին ընտրական շրջաններ:

## ԳԼՈՒԽ V

## ԸՆՏՐԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐ

Հոդված 34.— ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների Կենտրոնական ընտրական հանձնաժողովը կազմվում է աշխատավորների հասարակական կազմակերպությունների ու ընկերությունների ներկայացուցիչներից և հաստատվում է ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության կողմից, ընտրությունների օրվա հրապարակման հետ միաժամանակ:

Հոդված 35.— Կենտրոնական ընտրական հանձնաժողովը կազմվում է նախագահից, նախագահի տեղակալից, քարտուղարից և 12 անդամից:

Հոդված 36.— Կենտրոնական ընտրական հանձնաժողովը՝

ա) ԽՍՀՄ ամբողջ տերիտորիայում հսկում է ընտրությունների ընթացքում «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրություն



ների Կանոնադրության» անշեղ կատարման վրա.

բ) քննություն է առնում ընտրական հանձնաժողովների սխալ գործողությունների վերաբերյալ բողոքները և բողոքների առթիվ կայացնում է վերջնական վճիռներ.

գ) սահմանում է ընտրական արկղերի նմուշները, «քվեարկության իրավունքի վկայականի» ձևը, ընտրական բյուլետենների և ծրարների ձևն ու գույնը, ընտրողների ցուցակի ձևը, ձայները հաշվելու արձանագրության ձևը, ընտրվելու վերաբերյալ վկայականի ձևը.

դ) առմարագրում է ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի մեջ ընտրված պատգամավորներին.

ե) Միության Խորհրդի և Ազգությունների Խորհրդի մանդատային հանձնաժողովներին է հանձնում ընտրությունների վերաբերյալ գործավարությունը.

Հոդված 37.— Յուրաքանչյուր Միութենական ու Ավտոնոմ հանրապետության մեջ, ավտոնոմ մարզում և ազգային օկրուգում ստեղծվում են Ազգությունների Խորհրդի ընտրությունների Միութենական և Ավտոնոմ հանրապետության, ավտոնոմ

մարզի ու ազգային օկրուգի ընտրական հանձնաժողովներ:

Հոդված 38.— Ազգությունների Խորհրդի ընտրությունների ընտրական հանձնաժողովները կազմվում են աշխատավորների հասարակական կազմակերպությունների ու ընկերությունների ներկայացուցիչներից և հաստատվում են միութենական ու ավտոնոմ հանրապետությունների Գերագույն Խորհուրդների Նախագահությունների, ավտոնոմ մարզերի ու ազգային օկրուգների աշխատավորների պատգամավորների Խորհուրդների կողմից, վոչ ուշ քան ընտրություններից 50 օր առաջ:

Հոդված 39.— Միութենական ու Ավտոնոմ հանրապետությունների, ավտոնոմ մարզի ու ազգային օկրուգի՝ Ազգությունների Խորհրդի ընտրությունների ընտրական հանձնաժողովները կազմվում են նախագահից, նախագահի տեղակալից, քարտուղարից և 6–10 անդամից:

Հոդված 40.— Ազգությունների Խորհրդի ընտրությունների՝ Միութենական, ավտոնոմ հանրապետության, ավտոնոմ մարզի ու ազգային օկրուգի ընտրական հանձնաժողովը՝

ա) հանրապետության, ավտոնոմ մար-



զի, ազգային օկրուգի տերիտորիայում հսկում է Ազգությունների Խորհրդի ընտրությունների ընթացքում «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրութունների կանոնադրության» անշեղ կատարման վրա.

բ) քննության է առնում Ազգությունների Խորհրդի ընտրությունների ասպարիզում տեղի ունեցած սխալ գործողությունների վերաբերյալ բողոքները:

Հոդված 41.— Միության Խորհրդի ընտրությունների յուրաքանչյուր օկրուգում ստեղծվում է Միության Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողով:

Հոդված 42.— Յերկրային կամ մարզային բաժանում ունեցող հանրապետություններում Միության Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովները կազմվում են աշխատավորների հասարակական կազմակերպությունների ու ընկերությունների ներկայացուցիչներից և հաստատվում են յերկրամասերի ու մարզերի աշխատավորների պատգամավորների Խորհուրդների կողմից, մարզային կամ յերկրային բաժանում չունեցող հանրապետություններում — հանրապետությունների Գերագույն Խորհուրդների Նա-

նախագահությունների կողմից, վոչ ուշ քան ընտրություններից 55 որ առաջ:

Հոդված 43.— Միության Խորհրդի ընտրությունների ոկրուգային ընտրական հանձնաժողովը կազմվում է նախագահից, նախագահի տեղակալից, քարտուղարից և 8 անդամից:

Հոդված 44.— Միության Խորհրդի ընտրությունների ոկրուգային ընտրական հանձնաժողովը՝

ա) հսկում է, վորպեսզի աշխատավորների պատգամավորների Խորհուրդների համապատասխան գործադիր կոմիտեներն ընտրական շրջանները ժամանակին կազմակերպեն.

բ) Հսկում է ընտրողների ցուցակները ժամանակին կազմելու և ընդհանուրի դիտության հասցնելու վրա.

գ) տոմարագրում է Միության Խորհրդի պատգամավորության համար առաջադրված թեկնածուներին, պահպանելով ԽՍՀՄ Սահմանադրության և «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների Կանոնադրության» պահանջները.

դ) շրջանային ընտրական հանձնաժողովներին մատակարարում է Միության Խորհրդի ընտրությունների ընտրական բյու-



լետեններ ու սահմանված ձևի ծրարներ.

ե) հաշվում է ձայները և վորոշում ընտրությունների արդյունքները՝ ըստ ոկրուգի.

զ) կենտրոնական ընտրական հանձնաժողովին է ներկայացնում ընտրությունների վերաբերյալ գործավարությունը.

է) ընտրված պատգամավորին վկայական և տալիս ընտրվելու վերաբերյալ:

Հոդված 45.— Ազգությունների Խորհրդի ընտրությունների յուրաքանչյուր ոկրուգում ստեղծվում է Ազգությունների Խորհրդի ընտրությունների ոկրուգային ընտրական հանձնաժողով:

Հոդված 46.— Ազգությունների Խորհրդի ընտրությունների ոկրուգային ընտրական հանձնաժողովները կազմվում են աշխատավորների հասարակական կազմակերպությունների ու ընկերությունների ներկայացուցիչներից և հաստատվում են Միութենական ու Ավտոնոմ հանրապետությունների Գերագույն Խորհուրդների Նախագահությունների և ավտոնոմ մարզերի աշխատավորների պատգամավորների խորհուրդների կողմից, վոչ ուշ քան ընտրություններից 50 որ առաջ:

Հոդված 47.— Ազգությունների Խորհրդի

ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովը կազմվում է նախագահից, նախագահի տեղակալից, քարտուղարից և 8 անդամից:

Հոդված 48.— Ազգությունների Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովը՝

ա) ստուգում է Ազգությունների Խորհրդի պատգամավորության համար առաջադրված թեկնածուներին, պահպանելով ԽՍՀՄ Սահմանադրության և «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» պահանջները.

բ) շրջանային ընտրական հանձնաժողովներին մատակարարում է Ազգությունների Խորհրդի ընտրությունների ընտրական բյուլետենները՝ ըստ սահմանված ձևի.

գ) հաշվում է ձայները և վորոշում ընտրությունների արդյունքները՝ ըստ օկրուգի:

դ) ընտրությունների վերաբերյալ գործավարությունը ներկայացնում է Կենտրոնական Ընտրական Հանձնաժողովին և համապատասխանորեն՝ Ազգությունների Խորհրդի ընտրությունների հանրապետական ընտրական հանձնաժողովին կամ Ազգությունների Խորհրդի ընտրությունների ավտոնոմ մարզի ընտրական հանձնաժողովին.



ե) ընտրված պատգամավորին վկայական է տալիս ընտրվելու մասին:

Հոդված 49.— Շրջանային ընտրական հանձնաժողովները կազմվում են աշխատավորների հասարակական կազմակերպությունների ու ընկերությունների ներկայացուցիչներից և հաստատվում են քաղաքներում՝ աշխատավորների պատգամավորների քաղաքային Խորհուրդների կողմից, իսկ ռայոնական բաժանում ունեցող քաղաքներում՝ աշխատավորների պատգամավորների ռայոնական Խորհուրդների կողմից, գյուղական վայրերում՝ աշխատավորների պատգամավորների շրջանային Խորհուրդների կողմից, վոչ ուշ քան ընտրություններից 40 որ առաջ:

Հոդված 50.— Շրջանային ընտրական հանձնաժողովը կազմվում է նախագահից, նախագահի տեղակալից, քարտուղարից և 4–8 անդամից:

Հոդված 51.— Շրջանային ընտրական հանձնաժողովը՝

ա) ընտրական շրջանում կատարում է ընտրական բյուլետենների ընդունումը.

բ) հաշվում է Միության Խորհրդի և Ազգությունների Խորհրդի պատգամավորի

յուրաքանչյուր թեկնածուի համար տրված ձայները.

գ) ընտրությունների գործավարությունը հանձնում է համապատասխանորեն Միության Խորհրդի ընտրությունների և Ազգությունների Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովներին:

Հոդված 52.— Կենտրոնական ընտրական հանձնաժողովի, Ազգությունների Խորհրդի ընտրությունների հանրապետական ընտրական հանձնաժողովի, Ազգությունների Խորհրդի ընտրությունների ավտոնոմ մարզերի ու ազգային օկրուգների ընտրական հանձնաժողովների, Միության Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովի և Ազգությունների Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովի, ինչպես և շրջանային ընտրական հանձնաժողովների նիստերն օրինական են համարվում, յեթե նրանց մասնակցում է հանձնաժողովի ընդհանուր կազմի կեսից ավելին:

Հոդված 53.— Ընտրական հանձնաժողովներում բոլոր հարցերը վճռվում են ձայների հասարակ մեծամասնությամբ. ձայները հավասար լինելու դեպքում, նախագահի ձայնը գերակշռություն է տալիս:



Հոդված 54.— ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների հետ կապված ծախսերը կատարվում են պետության հաշվին:

Հոդված 55.— Կենտրոնական ընտրական հանձնաժողովը, Ազգությունների Խորհրդի ընտրությունների հանրապետական ընտրական հանձնաժողովները, Ազգությունների Խորհրդի ընտրությունների ավտոնոմ մարզի, ազգային օկրուգի ընտրական հանձնաժողովները, Միության Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովը, Ազգությունների Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովը և շրջանայի ընտրական հանձնաժողովներն ունեն իրենց կնիքը՝ կենտրոնական ընտրական հանձնաժողովի սահմանած ձևով:

## ԳԼՈՒԽ VI

## ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐՆԵՐԻ ՀԱՄԱՐ ԹԵԿՆԱԾՈՒ ԱՌԱՋԱԴՐԵԼՈՒ ԿԱՐԳԸ

Հոդված 56.— ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի թեկնածուներ առաջադրելու իրա-

վունքը ԽՍՀՄ Սահմանադրության 141-րդ հոդվածի հիման վրա ապահովվում է աշխատավորների հասարակական կազմակերպությունների և ընկերությունների՝ կոմունիստական կուսակցական կազմակերպությունների, պրոֆեսիոնալ միությունների, կոոպերատիվների, յերիտասարդության կազմակերպությունների, կուլտուրական ընկերությունների և այլ կազմակերպությունների համար, վորոնք գրանցված են որենքի սահմանած կարգով:

Հոդված 57.— Թեկնածու առաջադրելու իրավունքն իրականացնում են աշխատավորների հասարակական կազմակերպությունների և ընկերությունների թե՛ կենտրոնական որգանները և թե՛ նրանց հանրապետական, յերկրային, մարզային ու շրջանային որգանները, ինչպես և բանվորների ու ծառայողների ընդհանուր ժողովները ձեռնարկություններում, կարմիր բանակայինների ընդհանուր ժողովները զորամասերում, ինչպես և գյուղացիների ընդհանուր ժողովները կոլտնտեսություններում, խորհտնտեսությունների բանվորների ու ծառայողների ընդհանուր ժողովները խորհտնտեսություններում:

Հոդված 58.— Պատգամավորների թեկ-



նածուները չեն կարող լինել Միության Խորհրդի ընտրությունների և Ազգությունների Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովների, ինչպես և շրջանային ընտրական հանձնաժողովների անդամներն այն օկրուգի, վորտեղ նրանք առաջադրված են, վորպես պատգամավորի թեկնածու:

Հոդված 59.— Վոչ ուշ, քան ընտրություններից 30 որ առաջ, ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի պատգամավորների թեկնածու առաջադրող աշխատավորների բոլոր հասարակական կազմակերպությունները և ընկերությունները պարտավոր են պատգամավորների թեկնածուներին գրանցել համապատասխանորեն կամ Միության Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովում, կամ Ազգությունների Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովում:

Հոդված 60.— Միության Խորհրդի ընտրությունների և Ազգությունների Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովները պարտավոր են գրանցել ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի պատգամավորների այն բոլոր թեկնածուներին, վորոնք առաջադրվել են աշխատավորների

հասարակական կազմակերպությունների և ընկերությունների կողմից, պահպանելով ԽՍՀՄ Սահմանադրության և «Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» պահանջները:

Հոդված 61.— Աշխատավորների այն հասարակական կազմակերպությունը կամ ընկերությունը, վոր թեկնածուներ է առաջադրում ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի պատգամավորի համար, պարտավոր է ներկայացնել օկրուգային ընտրական հանձնաժողովին հետևյալ փաստաթղթերը՝

ա) պատգամավորի համար թեկնածու առաջադրող ժողովի կամ նիստի արձանագրությունը, ստորագրված նախագահության անդամների կողմից, մատնանշելով նրանց տարիքը, բնակատեղը, թեկնածու առաջադրող կազմակերպության անունը, մատնանշելով ժողովի կամ նիստի տեղը, ժամանակը և մասնակիցների թիվը, ընդ-վորում արձանագրության մեջ պետք է մատնանշված լինեն պատգամավորի թեկնածուի ազգանունը, անունը, հայրանունը, տարիքը, բնակատեղը, կուսակցականությունը, զբաղմունքը.

բ) պատգամավորի թեկնածուի հայտարարությունը, թե ինքը համաձայն է քը-



վեարկվելու տվյալ ընտրական օկրուգում՝ իրեն առաջադրած կազմակերպության կողմից:

Հոդված 62.— ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի պատգամավորի թեկնածուն կարող է քվեարկվել միմիայն մի օկրուգում:

Հոդված 63.— Միության Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովի հրաժարումը պատգամավորի թեկնածուին գրանցելուց՝ կարելի յե բողոքարկել յերկու օրվա ընթացքում կենտրոնական ընտրական հանձնաժողովին, վորի վորոշումը վերջնական է:

Հոդված 64.— Ազգությունների Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովի հրաժարումը թեկնածուին գրանցելուց՝ կարելի յե բողոքարկել յերկու օրում, Միութենական Ավտոնոմ հանրապետության, ավտոնոմ մարզի ընտրական հանձնաժողովին, իսկ վերջինիս վորոշումը՝ կենտրոնական ընտրական հանձնաժողովին, վորի վորոշումը վերջնական է:

Հոդված 65.— ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի պատգամավորի յուրաքանչյուր արձանագրված թեկնածուի ազգանունը, անունը, հայրանունը, տարիքը, զբաղմուն-

քը, կուսակցականությունը և թեկնածուն առաջադրող հասարակական կազմակերպության անունը հրապարակում են համապատասխանորեն Միության Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովը և Ազգությունների Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովը, ոչ ուշ, քան ընտրություններից 25 օր առաջ:

Հոդված 66.— ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի պատգամավորի բոլոր գրանցված թեկնածուները պարտադիր կարգով պետք է մտցվեն ընտրական բյուլետենի մեջ:

Հոդված 67.— Միության Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովը և Ազգությունների Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովը ոչ ուշ, քան ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրություններից 15 օր առաջ, պարտավոր են տպագրել և բոլոր շրջանային ընտրական հանձնաժողովներին ուղարկել ընտրական բյուլետենները:

Հոդված 68.— Ընտրական բյուլետենները տպագրվում են համապատասխան ընտրական օկրուգի ազգաբնակության լեզվով:

Հոդված 69.— Ընտրական բյուլետենները տպագրվում են կենտրոնական ընտրական



հանձնաժողովի սահմանած ձևով և այն քանակությամբ, որ ապահովվի ընտրական բյուլետենների մատակարարումը բոլոր ընտրողներին:

Հոդված 70. — Յուրաքանչյուր կազմակերպությունը, որն առաջադրել է օկրուգային ընտրական հանձնաժողովում գրանցված թեկնածու, ինչպես և ԽՍՀՄ յուրաքանչյուր քաղաքացուն իրավունք է ապահովվում անարգել ագիտացիա մղելու այդ թեկնածուի համար ժողովներում, մամուլում, և այլ միջոցներով, համաձայն ԽՍՀՄ Սահմանադրության 125-րդ հոդվածի:

## ԳԼՈՒԽ VII

## ՔՎԵԱՐԿՈՒԹՅԱՆ ԿԱՐԳԸ

Հոդված 71.— ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունները կատարվում են ամբողջ ԽՍՀՄ-ի համար ընդհանուր մի օրվա ընթացքում:

Հոդված 72.— ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների օրը սահմանում է ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահությունը, ԽՍՀՄ Սահմանադրության 54-րդ

հոդվածի հիման վրա, վոչ ուշ, քան ընտրությունների ժամկետից 2 ամիս առաջ: Ընտրությունները կատարվում են վոչ աշխատանքային օրը:

Հոդված 73.— Ընտրություններին մնացած վերջին 20 օրվա ընթացքում շրջանային ընտրական հանձնաժողովն ամեն օր հրապարակում կամ վորևե այլ միջոցով լայնորեն հաղորդում է ընտրողներին ընտրությունների օրը և ընտրությունների տեղը:

Հոդված 74.— Ընտրողներն իրենց ձայները տալիս են ընտրությունների օրը, առավոտյան ժամը 6-ից մինչև գիշերվա ժամը 12-ը:

Հոդված 75.— Ընտրությունների օրը, առավոտյան ժամը 6-ին, շրջանային ընտրական հանձնաժողովի նախագահը, հանձնաժողովի անդամների ներկայությամբ, ստուգում է քվեատուփերը և սահմանված կարգով կազմված՝ ընտրողների ցուցակի առկայությունը, վորից հետո փակում ու կնքում է քվեատուփը հանձնաժողովի կնիքով և հրավիրում է ընտրողներին սկսելու ձայներ տալը:

Հոդված 76.— Յուրաքանչյուր ընտրող քվեարկում է անձամբ, ներկայանալով այդ



նպատակով քվեարկության համար հատկացված շենքը. ընդ վորում ընտրողներն իրենց ձայները տալիս են ընտրական բյուլետենները փակ ծրարով գցելով քվեատուփի մեջ:

Հոդված 77.— Ընտրությունների շենքում բյուլետենները լրացնելու համար հատկացվում է առանձին սենյակ, վորտեղ քվեարկության ժամանակ արգելվում է վորևե մեկի, ներառյալ նաև շրջանային ընտրական հանձնաժողովի անդամների ներկայությունը, բացի քվեարկողներից. բյուլետենները լրացնելու համար մի քանի ընտրողների միաժամանակ ներս թողնելիս՝ սենյակը պետք է ունենա միջնորմներ կամ վարագույրներ՝ միաժամանակ ներս թողնվող ընտրողների թվի չափ:

Հոդված 78.— Ընտրական շենքը մտնող ընտրողը շրջանային ընտրական հանձնաժողովի քարտուղարին ներկայացնում է կամ անձնագիրը, կամ կոլտնտեսային գրքույկը, կամ պրոֆմիության տոմսը, կամ վորևե այլ ինքնության վկայական, և ընտրողների ցուցակով ստուգվելուց ու ընտրողների ցուցակում նշվելուց հետո, ստանում է սահմանված ձևի ընտրական բյուլետեններ ու ծրար:

Հոդված 79.— Այն անձանց համար, վորոնք ընտրությունների շենքն են մտել «քվեարկության իրավունքի վկայականով», համաձայն սույն «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» 15-րդ հոդվածի, շրջանային ընտրական հանձնաժողովը կազմում է հատուկ ցուցակ, վորը կցվում է ընտրողների ցուցակին:

Հոդված 80.— Ընտրական բյուլետենները լրացնելու համար հատկացված սենյակում ընտրողը յուրաքանչյուր ընտրական բյուլետենում թողնում է այն թեկնածուի ազգանունը, վորի համար քվեարկում է ինքը, ջնջելով մյուսներինը, բյուլետենները դնելով ծրարի մեջ ու փակցնելով ծրարը, ընտրողն անցնում է այն սենյակը, վորտեղ գտնվում է շրջանային ընտրական հանձնաժողովը և ընտրական բյուլետեններ պարունակող ծրարը գցում է քվեատուփի մեջ:

Հոդված 81.— Այն ընտրողները, վորոնք անգրագիտության կամ վորևե ֆիզիքական թերության պատճառով հնարավորություն չունեն ինքնուրույն կերպով լրացնելու ընտրական բյուլետենները, իրավունք ունեն ընտրական բյուլետենները լրացնող սենյակը հրավիրել վորևե այլ ընտրողի՝



ընտրական բյուլետենները լրացնելու համար:

Հոդված 82.— Ընտրական շենքում, ձայներ տալու ժամանակ, ընտրական ագիտացիա չի թույլատրվում:

Հոդված 83.— Ընտրական շենքում կարգապահության համար պատասխանատվություն է կրում հանձնաժողովի նախագահը, և նրա կարգադրությունները բոլոր ներկա գտնվողների համար պարտադիր են:

Հոդված 84.— Ընտրությունների օրվա գիշերը, ժամը 12-ին, շրջանային ընտրական հանձնաժողովի նախագահը ձայներ տալն ավարտված է հայտարարում և հանձնաժողովն սկսում է բանալ քվեատուփերը:

## ԳԼՈՒԽ VIII.

## ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՎՈՐՈՇՈՒՄԸ

Հոդված 85.— Այն շենքում, վորտեղ շրջանային ընտրական հանձնաժողովը հաշվում է ձայները, հաշվելու ժամանակ ներկա գտնվելու իրավունք ունեն աշխատավորների հասարակական կազմակերպությունների և ընկերությունների դրա հա-

մար հատկապես լիազորված ներկայացուցիչները, ինչպես և մամուլի ներկայացուցիչները։

Հոդված 86.— Շրջանային ընտրական հանձնաժողովը, բաց անելով քվեատուփերը, ստուգում է քվեարկությանը մասնակցող անձանց թիվը, համեմատելով վերջինս տրված ծրարների թվի հետ և ստուգման արդյունքները մտցնում է արձանագրության մեջ։

Հոդված 87.— Շրջանային ընտրական հանձնաժողովի նախագահը բաց է անում ծրարները և շրջանային ընտրական հանձնաժողովի բոլոր անդամների ներկայությամբ կարդում է քվեարկման արդյունքներն ըստ յուրաքանչյուր բյուլետենի։

Հոդված 88.— Քվեարկության արդյունքների գրանցումը կատարվում է ըստ Միության Խորհրդի ընտրությունների և ըստ Ազգությունների Խորհրդի ընտրությունների առանձին–առանձին։

Հոդված 89.— Պատգամավորի յուրաքանչյուր թեկնածուի համար կազմվում է հաշվային թերթիկ՝ յերկու օրինակ՝ շրջանային ընտրական հանձնաժողովի քարտուղարի կողմից և դրա համար լիազորված անդամների կողմից։



Հոդված 90.— Օրինական չեն համարվում՝

ա) վոչ սահմանված ձևով ու գույնով բյուլետենները․,

բ) առանց ծրարի կամ վոչ սահմանված ձևի ծրարով տրված բյուլետենները․

գ) այն բյուլետենները, վորոնք պարունակում են ընտրվելիք պատգամավորների թվից ավելի թեկնածուներ։

Հոդված 91.— Ընտրական բյուլետենի օրինական լինելու նկատմամբ տարակուսանք ծագելու դեպքում, հարցը լուծում է յենթաշրջանային ընտրական հանձնաժողովը քվեարկությամբ, վորը նշվում է արձանագրության մեջ։

Հոդված 92.— Շրջանային ընտրական հանձնաժողովը կազմում է քվեարկության արձանագրություն՝ սահմանված ձևով, յերեք օրինակ, վորոնք ստորագրում են շրջանային ընտրական հանձնաժողովի բոլոր անդամները, այդ թվում՝ պարտադիր կերպով նախագահն ու քարտուղարը։

Հոդված 93.— Շրջանային ընտրական հանձնաժողովի քվեարկության արձանագրության մեջ պետք է մատնանշված լինի՝

ա) քվեարկությունն սկսվելու և վերջանալու ժամանակը․

բ) ընտրողների ցուցակով ձայն տված ընտրողների թիվը.

գ) «քվեարկության իրավունքի վկայականներով» ձայն տված ընտրողների թիվը.

դ) տրված ծրարների թիվը.

ե) շրջանային ընտրական հանձնաժողովին տրված դիմումների ու բողոքների համառոտ շարադրությունը և շրջանային ընտրական հանձնաժողովի ընդունած վորոշումները.

զ) ձայները հաշվելու արդյունքները՝ ըստ յուրաքանչյուր թեկնածուի:

Հոդված 94.— Ձայների հաշվելը վերջանալուց և արձանագրությունը կազմվելուց հետո, հանձնաժողովի նախագահը հրապարակում է քվեարկության արդյունքները հանձնաժողովի բոլոր անդամների ներկայությամբ:

Հոդված 95.— Շրջանային ընտրական հանձնաժողովի կազմած քվեարկության արձանագրության մի օրինակը, Միության Խորհրդի պատգամավորի թեկնածուի հաշվային թերթիկների յերկու օրինակի հետ միասին, 24 ժամվա ընթացքում, սուրհանդակի միջոցով ուղարկվում է Միության Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովին. շրջանային



ընտրական հանձնաժողովի կազմած քվեարկության արձանագրության յերկրորդ օրինակը, Ազգությունների Խորհրդի պատգամավորի թեկնածուների հաշվային թերթիկների յերկու օրինակների հետ միասին, սուրհանդակի միջոցով 24 ժամվա ընթացքում ուղարկվում է Ազգությունների Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովին:

Հոդված 96.— Բոլոր ընտրական բյուլետենները (օրինական ճանաչվածներն առանձին և վոչ օրինական ճանաչվածներն առանձին), Միության Խորհրդին վերաբերողն առանձին և Ազգությունների Խորհրդին վերաբերողն առանձին պետք է կնքվեն շրջանային ընտրական հանձնաժողովի կնիքով և, քվեարկության արձանագրության յերրորդ օրինակի ու կնիքի հետ միասին, շրջանային ընտրական հանձնաժողովի կողմից հանձնվում են պահպանելու՝ քաղաքներում — աշխատավորների պատգամավորների քաղաքային Խորհուրդներին, իսկ ռայոնական բաժանում ունեցող քաղաքներում — աշխատավորների պատգամավորների ռայոնական Խորհուրդներին, գյուղական վայրերում — աշխատավորների պատգամավորների շրջանային Խորհուրդներին:

Հոդված 97.— Աշխատավորների պատգամավորների Խորհրդի վրա պարտականություն է դրվում պահպանելու ընտրական բյուլետենները, մինչև վոր համապատասխան օկրուգի պատգամավորների մանդատները հաստատվեն ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի կողմից։

Հոդված 98.— Օկրուգային ընտրական հանձնաժողովը ձայները հաշվում է շրջանային ընտրական հանձնաժողովների ներկայացրած արձանագրությունների հիման վրա։

Հոդված 99.— Այն շենքում, վորտեղ շրջանային ընտրական հանձնաժողովը հաշվում է ձայները, հաշվելիս ներկա գտնվելու իրավունք ունեն աշխատավորների հասարակական կազմակերպությունների և ընկերությունների դրա համար հատկապես լիազորված ներկայացուցիչները, ինչպես և մամուլի ներկայացուցիչները։

Հոդված 100.— Օկրուգային ընտրական հանձնաժողովը յուրաքանչյուր թեկնածուի համար կազմում է յերկու օրինակ հաշվային թերթիկ, վորտեղ նշվում է պատգամավորի յուրաքանչյուր թեկնածուի ստացած ձայների թիվը։



Հոդված 101.— Օկրուգային ընտրական հանձնաժողովը կազմում է քվեարկման արձանագրություն՝ յերկու օրինակից, վորոնք ստորագրում են օկրուգային ընտրական հանձնաժողովի բոլոր անդամները, այդ թվում՝ պարտադիր կերպով նախագահն ու քարտուղարը։

Հոդված 102.— Օկրուգային ընտրական հանձնաժողովի արձանագրության մեջ պետք է մատնանշված լինի՝

ա) օկրուգի ընտրողների ընդհանուր թիվը.

բ) քվեարկությանը մասնակցած ընտրողների ընդհանուր թիվը.

գ) պատգամավորի յուրաքանչյուր թեկնածուի համար տրված ձայների թիվը.

դ) օկրուգային ընտրական հանձնաժողովին տրված հայտարարությունների ու բողոքների հակիրճ շարադրությունը և օկրուգային ընտրական հանձնաժողովի ընդունած վորոշումները։

Հոդված 103.— Ձայների հաշվելը վերջանալուց ամենաուշը 24 ժամ հետո Միության Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովի նախագահը, ինչպես և Ազգությունների Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական

հանձնաժողովի նախագահը, պարտավոր են արձանագրության առաջին օրինակը, հաշվային թերթիկների հետ միասին, կնքված, սուրհանդակի միջոցով, ուղարկել կենտրոնական ընտրական հանձնաժողովին, իսկ արձանագրության երկրորդ օրինակն ուղարկել Ազգությունների Խորհրդի ընտրությունների Միութենական հանրապետության, Ավտոնոմ հանրապետության, ավտոնոմ մարզի ընտրական հանձնաժողովին:

Հոդված 104.— ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի պատգամավորի այն թեկնածուն, որը ստացել է ձայների բացարձակ մեծամասնություն, այսինքն օկրուգում տրված և օրինական ճանաչված բոլոր ձայների կեսից ավելին, ընտրված է համարվում:

Հոդված 105.— Արձանագրությունն ստորագրվելուց հետո Միության Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովի նախագահը կարդում է ընտրությունների արդյունքները և ընտրության մասին վկայական է տալիս Միության խորհրդի պատգամավորի ընտրված թեկնածուին:

Հոդված 106.— Արձանագրությունն ստորագրվելուց հետո Ազգությունների Խոր-



հրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողովի նախագահը կարդում է ընտրությունների արդյունքը և Ազգությունների Խորհրդի պատգամավորի թեկնածուին վկայական է տալիս նրա ընտրվելու մասին:

Հոդված 107.— Եթե թեկնածուներից ոչ մեկը ձայների բացարձակ մեծամասնություն չի ստացել, համապատասխան օկրուգային ընտրական հանձնաժողովն այդ նշում է արձանագրության մեջ առանձին և հաղորդում է կենտրոնական ընտրական հանձնաժողովին ու Ազգությունների Խորհրդի ընտրությունների հանրապետության, ավտոնոմ մարզի կամ ազգային օկրուգի ընտրական հանձնաժողովին և միաժամանակ հայտարարում է ձայների ամենամեծ թիվն ստացած երկու թեկնածուների վերաքվեարկումը, ինչպես և նշանակում է վերաքվեարկման օրը, ոչ ուշ քան ընտրությունների առաջին շրջանը լրանալուց 2 շաբաթ հետո:

Հոդված 108.— Եթե օկրուգում տրված ձայների քանակը կազմում է այդ օկրուգում քվեարկելու իրավունք ունեցող ընտրողների կեսից պակաս մասը, Միության Խորհրդի ընտրությունների կամ Ազ-

գուԹյունների Խորհրդի ընտրուԹյունների օկրուգային ընտրական հանձնաժողովն այդ նշում է առանձին արձանագրուԹյան մեջ և անհապաղ հաղորդում է կենտրոնական ընտրական հանձնաժողովին և ԱզգուԹյունների Խորհրդի ընտրուԹյունների հանրապետուԹյան, ավտոնոմ մարզի ընտրական հանձնաժողովին, ընդ վորում այդ դեպքում կենտրոնական ընտրական հանձնաժողովի նոր ընտրուԹյուններ է նշանակում վոչ ուշ քան առաջին ընտրուԹյուններից յերկու շաբաԹ հետո:

Հոդված 109.— Պատգամավորների Թեկնածուների վերաքվեարկումը, ինչպես և վոչ որինական ճանաչվածների փոխարեն կատարվելիք նոր ընտրուԹյունները տեղի յեն ունենում առաջին ընտրուԹյունների համար կազմված ընտրողների ցուցակներով և կատարելապես համաձայն սույն «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրուԹյունների կանոնադրուԹյան»:

Հոդված 110.— ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի կազմից պատգամավորը դուրս գալու դեպքում, ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ՆախագահուԹյունը յերկու շաբաԹվա ընԹացքում համապատասխան ընտրական օկրուգում նշանակում է նոր պատգամավոր-



ների ընտրուԹյունների ժամկետը, սակայն վոչ ուշ, քան ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի կազմից պատգամավորը դուրս գալուց յերկու ամիս հետո:

Հոդված 111.— Ամեն մեկը, ով բռնուԹյամբ, խաբեբայուԹյամբ, սպառնալիքներով կամ կաշառքով խոչընդոտ կհանդիսանա ԽՍՀՄ քաղաքացուն՝ ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի պատգամավոր ընտրելու կամ ընտրվելու իր իրավունքն իրականացնելու գործում, պատժվում է ազատազրկմամբ մինչև յերկու տարի ժամանակով:

Հոդված 112.— Խորհրդի այն պաշտոնատար անձը կամ ընտրական հանձնաժողովի անդամը, վորը կկեղծի ընտրական փաստաԹղԹերը կամ դիտավորյալ կերպով սխալ կհաշվի ձայները, — պատժվում է ազատազրկմամբ մինչև յերեք տարի ժամանակով:

ԽՍՀՄ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԳՈՐԾԱԴԻՐ
ԿՈՄԻՏԵՅԻ ՆԱԽԱԳԱՀ՝

Մ. ԿԱԼԻՆԻՆ

ԽՍՀՄ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԳՈՐԾԱԴԻՐ
ԿՈՄԻՏԵՅԻ ՔԱՐՏՈՒՂԱՐ՝

Ա. ԳՈՐԿԻՆ

Մոսկվա, Կրեմլ
1937 թ. հուլիսի 9

## ՈՒՂՂՈՒՄ

«Ագիտատորի Բլոկնոտ»-ի 11–12 միացյալ համարում 61-րդ էջում տպված ընկեր Ամատունու զեկուցման մեջ «Հացահատիկի կորուստը բերքահավաքի ժամանակ» հատվածում տեղավորված աղյուսակում սպրդել է սխալ.

Արտում տեղի ունեցած կորուստների այլ տեսակների վերաբերյալ գարնանացան ցորենի նկատմամբ տրված է 2,05 տոկոս, գարնանացան գարու նկատմամբ — 2,34 տոկոս, պետք է լինի՝ գարնանացան ցորենին — 0,07, գարնանացան գարու — 0,04 տոկոս։





Շարունակվում է 1937 թ.

բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ

Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուլտպրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺՆԵԳԻՆԸ

12 ամիսը . . . 6 ռուբ.

6 » . . 3 »

3 » . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝ «Սոյուզպեչատ»-ի քաղաքային, շրջանային բյուրոներին և փոստի բաժանմունքներին։